

ՀԱՅՐԵՆԻ ԲՆՈՒԹՅԱՆ ՋՈՎԱՍՈՒՆ ԱՆՏԱՌՆԵՐՆ ՈՒ ԹԱՎՇԱԾԱԾԿ ՄԱՐԳԱԳԵՏԻՆՆԵՐԸ ԱՄԱՌԱՅԻՆ ՏԻՐՈՒՅԹՆ ԵՆ ԿԱՐՄԻՐ ՓՈՂԿԱՊԱՎՈՐՆԵՐԻ. ՀՆՉՈՒՄ ԵՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՓՈՂՆ ՈՒ ԹՄԲՈՒԿԸ, ՃԱՄԲԱՐԱԿԱՆՆԵՐԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԵԼՈՎ ԱՐՇԱՎՆԵՐԻ, ՌՈՄԱՆՏԻԿ ԾՐԱԳՐԵՐԻ ԻՐԱԳՈՐԾՄԱՆ, ԲՆՈՒԹՅԱՆ ՀՐԱՇՔՆԵՐՈՎ ՀՐՃՎԵԼՈՒ՝ ՈՂՋՈՒՆԵԼՈՒ ԱՐԵՎԱԾԱԳԸ, ՎԵՐՋԱԼՈՒՅՍԻՆ ՀՐԱԺԵՇՏ ՏԱԼՈՒ:

ԱՆՆԿԱՏԵԼԻ ԱՆՑՆՈՒՄ ԵՆ ՕՐԵՐԸ ՀԵՏԱՔՐՔՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ԼԻ, ԱՆԿՐԿՆԵԼԻ ՊԱՏԿԵՐՆԵՐ ԹՈՂՆԵԼՈՎ ՃԱՄԲԱՐԱԿԱՆՆԵՐԻ ՀԻՇՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ:



Լուսանկարը՝ ԷՄԻԼ ԱԼԱՅԱՐՅԱՆԻ

# Փողահարը

Է. ԿՈՒՆԴՈՒՇԵՎԱ

Մենք վազեցինք ճաշարան, գլուխներս քաշեցինք կոմպոտը, և այն է՝ սկսում էինք ուտել առաջինը, երբ մերոնցից մեկն ասաց.

— Ես տեսա, թե ինչպես Գրեչկինը դաշտով, ճամպրուկը ձեռքին, գնում էր ճամբարից:

Այս լսելն էր, ասես հրամանով, երեքս էլ գդալները գցեցինք ձեռներիցս, նայեցինք իրար աչքերի, և ամեն մեկս պատկերացրինք, թե ինչպես է Գրեչկինը, իր կապույտ ֆուտբոլկան հագին, նեղ արահետը բռնած, կանաչ արտերի միջով գնում...

Հետևյալ վայրկյանին մենք արդեն ղանում էինք փոշու ամպերի միջով, որ բարձրացնում էին լայն, ավազոտ խճուղով եկող հանդիպակաց բեռնատարները:

— Եկեք դանդաղեցնե՛նք, կողքս ծակում է,— կանչեց Իգորն ու սկսեց ետ ընկնել:

Մենք գնում էինք արագ-արագ, հևալով, և շարունակ հարցնում էինք միմյանց.

— Հասցնե՞նք, ճանապարհը կիսե՞լ ենք: Իսկ եթե հանկարծ չհասցնե՞նք:

Միջգյուղյա ճանապարհից շեղվեցինք և ապա կըրկին բռնեցինք այն: Հավերը վախեցած ճանապարհից դուրս էին թռչում: Մի պառավ լուսամուտից գլուխը հանեց. «Ի՞նչ է պատահել, այս երեք պիոները այս ո՞ւր են վազում»:

Վազելուց շնչահատ և քրտինքի մեջ կորած, շտապում էինք հասնել Գրեչկինին, շարունակ մտածելով այն մասին, թե ինչ անցավ մեր և Գրեչկինի միջով և ինչից սկսվեց ու ինչով վերջացավ այդ ամենը:

Դեռևս ճամբարի առաջին հերթի ժամանակ, մեր գալու հենց երկրորդ օրը, պիոներջոկատավար Նազլյան և դաստիարակ Սոֆյա Մատվեևան հավաքեցին մեզ ու ասացին.

— Տղանե՛ր, ասացե՛ք, ո՞վ է ձեզանից դպրոցում ջոկատի հրամանատար եղել և կարո՞ղ է իր փորձը գործադրել այստեղ:

Բոլորն, իհարկե, սկսեցին մեկը մյուսին նայել, թոթվել ուսերը, քթի տակ ժպտալ, մինչև որ պիոներ-

ջոկատավար Նադյան ինքը ուշադրություն դարձրեց խոժիվ մազերով տղայի վրա:

— Գրե՛չկին, գուցե դո՞ւ, հը՛,— հարցրեց նա հավատով լի,— որևէ խմբակում պարապո՞ւմ ես:

— Պարապում եմ,— ասաց Գրեչկինը,— հյուսնի... Առաջ պատանի բնագետի խմբակում էլ էի:

— Հետաքրքիր է, իսկ դպրոցական տարին ինչպե՞ս փակեցիր,— խոկույն աշխուժացավ Սոֆյա Մատվեևնան,— «չորսերդ» շա՞տ են:

— Երկուսը...— հառաչեց Գրեչկինն ու գլուխը կախեց:

— Դե, ոչի՛նչ,—ուրախացավ Նադյան,—ես գտնում եմ, որ Գրեչկինի թեկնածությունը հարմար է: Ով համաձայն է Գրեչկինին, խնդրում եմ ձեռք բարձրացնի:

Մենք էլ, իհարկե, բոլորս քվեարկեցինք, մեզ համար բոլորը մեկ էին, ոչ ոքի չէինք ճանաչում: Է՛հ, թող լինի Գրեչկինը: Բայց երբ երեկոյան տողանի ժամանակ, ոտքերն իրար պարկելով նա կտրուկ շրջադարձ կատարեց ու գնաց վեկույց տալու և նրա զընգուն ձայնը բարձր ազդարարեց՝ «համար հինգ ջոկատը պատրաստ է տողանին», հասկացանք, որ հրամանատարի հարցում բախտներս բերել է:

Այնուհետև, Իգորը մի գլուխ ասում էր. «Ինչ լա՜վ կլիներ, եթե Գրեչկինը մեր դասարանում լիներ»: Եվ մեկանից ո՛չ մեկը չէր պարմանում, որովհետև պարզվեց, որ, իրոք, Գրեչկինի ձեռքից ամեն բան գալիս է: Առաջին բանը, որ նա մտածեց, հին կոճղերից նըստարաններ շինելն էր: Մի ամբողջ շաբաթ մենք սղոցում էինք, տաշում, ողորկում, և այնքան ջանադիր, որ մեր ձեռքերը կոշտուկակալեցին, ինչպես իսկական բանվորներինը: Հետո Գրեչկինը Նադյայից համաձայնություն առավ գիշերը խեցգետնի որսի գնալու, և մենք գիշերը ջահերով գնացինք գետափ և այնքան խեցգետին որսացինք, որ բավականացրեց ամբողջ ճամբարին: Ե՛վ լավագույն ֆանտաստի մրցույթն էր նա մտածել: Ե՛վ, իհարկե, միայն և միայն նրա շնորհիվ էր, որ մեր ջոկատը դեղաբույսեր հավաքելիս առաջին տեղը գրավեց: Նա անտառում հովտաշուշանների մի ամբողջ բացատ գտավ: Եվ այդ այն ժամանակ, երբ Կիրիլը հայտարարել էր, թե մեր անտառում ոչ մի հովտաշուշան չկա:

— Ես երրորդ տարին է գալիս եմ այստեղ, այստեղի ամեն մի խոտը գիտեմ,— ասում էր Կիրիլը, և բոլորը հավատում էին նրան, Գրեչկինից բացի. նա չէր հավատում: Ահա թե ինչպիսի հրամանատար էր նա: Ինչո՞ւ պարմանալ, որ մյուս ջոկատները նախանձում էին մեզ: Մենք Գրեչկինի հետ նույնիսկ աղբը հավաքում էինք հաճույքով: Ես ինքս լսեցի, թե ինչպես մի անգամ Սոֆյա Մատվեևնան Նադյային ասաց, որ Գրեչկինը իրեն հուշում-հիշեցնում է իր բալկմաշյա փորձը և որ նա իսկական հրամանատար է և իսկական պիոներական առաջնորդ:

Ճամբարը մեզ շատ դուր եկավ, և մեկնից շատերը գրեցին իրենց ծնողներին, որ թողնեն երկրորդ հերթին էլ այստեղ մնան: Շատ ցանկալի էր, որ Գրեչկինն էլ որոշեր մնալ:



Նկ. Ա. ՊԱԽՈՄՈՎԻ

Երկրորդ հերթին Գրեչկինը մնաց, բայց նրա հետ մնացինք միայն չորս հոգի: Նադյան այդ իմանալով՝ ասաց, որ անպայման Գրեչկինը դարձյալ մեր ջոկատի նախագահը կլինի:

Այդպես էլ եղավ: Հենց առաջին իսկ օրը Նադյան ինքն առաջարկեց Գրեչկինին ընտրել ջոկատի նախագահ, և թեև Գրեչկինը հոնքերը կիտեց, ես տեսա, թե ինչպես էր նա հուզված և ինչպես ուրախացավ, երբ նրա թեկնածության համար ձեռքերի անտառ բարձրացավ:

Իսկ առավոտյան, երբ մենք հավաքվեցինք մեր տնակում, որպեսզի Գրեչկինի գլխավորությամբ գընանք սատադիոն, Նադյան բերեց մի աղջկա, որի ծնողները նրան ճամբար էին հասցրել սեփական մե-

քենայով: Նրան որ տեսավ, մեր Գրեչկինը սաստիկ կարմրեց, և ինչպես պարզվեց, պատճառ կար: Այդ նորեկ Լուսյան, իմանալով, որ ամբողջ հերթափոխի ընթացքում պետք է ենթարկվի իր համադասարանցու հրահանգներին, սկսեց քրքջալ:

— Համա թե նախագահ եք գտե՛լ,— ասաց նա,— Գրեչկինը շարունակ «երկուսներ» է ստանում: Նրա օրագիրը դիտողություններից նախշված է կարմիրով...

— Ինչպե՞ս թե,— զարմացավ Կիրիլը,— նա ընդամենը երկու «չորս» ունի:

— Ճիշտ է,— ծիծաղեց Լուսյան,— մի «չորսը» երգեցողությունից է, մյուսը՝ ֆիզկուլտուրայից: Իսկ մնացածը «երկուսներ» են:

— Պատասխա՛ն տուր դու նրան, Գրե՛չկին,— բղավեց Իգորը:

Բայց Գրեչկինը լուռ մնաց: Կանգնել, աչքերն էր թարթում ու լռում: Եվ բոլորի համար պարզ դարձավ, որ այդ Լյուսյան ճիշտ է ասում: Գրեչկինը գերազանցիկ չէր: Այնպես վիրավորական էր, որ «երկուսներ» ստացող մեկը մեր հրամանատարն է:

— Է՜յ, դո՛ւ,— ասաց Կիրիլը,— լավ ես մեզ բոլորիս մատներիդ վրա ֆռացրել:

— Ասո՞ւմ ես...— ծոր տվեց Իգորը: Իսկ նորեկներից մեկն էլ մոտեցավ ու Գրեչկինի գլխարկը քաշեց աչքերին:

Հետո մենք վազեցինք ստադիոն, ճանապարհին քննարկելով կատարվածը, այնուհետև ֆուտբոլով տարվեցինք ու մոռացանք աշխարհում ամեն ինչ: Իսկ այդ ժամանակ Գրեչկինը ճամբարից գնացել էր:

Խաղից կշտանալով, մենք նորից հիշեցինք Գրեչկինին ու նաև այն, թե ինչպես ընտրեցինք նրան ու նա դարձավ մեր նախագահը, և մտածեցինք, որ հավանաբար նա ինքն այնքան էլ մեղավոր չի: Ինքը մեզ չխնդրեց, ոչ էլ ստեց, երբ ասաց որ միայն երկու «չորս» ունի: Իրոք երկուսն ունի: Իսկ իբրև հրամանատար լավն էր: Է՜հ, ամեն բան մուրտառվեց: Եվ այնպիսի վայրույթով լցվեցինք մենք մեր դեմ, որ պատրաստ էինք քրքրել մեզ: Ահա և այդպիսի տրամադրությամբ մտնում ենք ճաշարան, կոմպոտը գըլուխներս ենք քաշում... ու տղաներից մեկը, թե՝ Գրեչկինը ճամբարից գնացել է...

Գնացքը կանգնած էր հեռավոր գծերի վրա: Մենք նետվեցինք վագոնները ու վերջապես տեսանք Գրեչկինին:

— Ողջո՜ւյն, Անդրե՜յ,— սկսեց Իգորը կվարթ ձայնով,— ահա՛ և մենք: Քո ետևից ենք եկել: Գնանք ճամբա՞ր:

Գրեչկինը ասես թե չլսեց նրան:

— Գնա՛նք,— բռնեցի ես նրա թևքը,— թե չէ տողանից կուշանանք: Իսկ դու, իբրև հրամանատար, առաջին հերթին պետք է չուշանաս:

— Ես արդեն հրամանատար չեմ,— ցածրաձայն ասաց Անդրեյը:

— Ինչո՞ւ հրամանատար չես, շատ լավ էլ հրամանատար ես,— արագ ասաց Իգորը:— Քեզ նման հրաշալի հրամանատարի ես դեռ չեմ հանդիպել, ո՛չ դպրոցում, ո՛չ ճամբարում, ակնի՛վ խոսք:

Գրեչկինը գլուխը շարժեց:

— Ի միջի այլոց, դու ուրիշներին վատ վիճակում ես դնում,— բարկացավ Իգորը,— ճամպրուկդ վերցրո՛ւ, դո՛ւրս արի վագոնից:

— Չեմ գալիս,— ասաց Գրեչկինն ու գլուխը կախեց:

— Մոռանում ես, որ շուտով շոգենավով գնալու ենք...

— Եվ ակումբում էլ,— ձայնեցինք մենք,— հայտարարություն է կախված. վաղն հանդիպո՞ւմ է նախկին հետախույզ, Սովետական Միության կրկնակի հերոսի հետ:

Մինչև գնացքի մեկնելը մնում էր ևս մի քանի րոպե, երբ մենք հասկացանք, որ Գրեչկինը չի վերադառնալու: Բայց շարունակում էինք դոփել վագոնի մոտ և նայել Գրեչկինին, իսկ նա էլ՝ մեզ:

Երբ ճամբար վերադարձանք, բոլորն արդեն գիտեին Գրեչկինի ինքնագլուխ գնալու մասին: Մեզ կանչեցին ճամբարի պետի մոտ, և մենք Նադյայի ու Սոֆյա Մատվեևնայի ներկայությամբ, որոնք շատ հուզված էին, պատմեցինք, թե ինչպես էինք համոզում Գրեչկինին մնալ, իսկ նա այնուամենայնիվ չմընաց, գնաց քաղաք:

Երեկոյան ջոկատը նոր հրամանատար ընտրեց, նորեկներից՝ Էդիկ Ստրունինին, որն իրոք դպրոցում հրամանատար էր եղել և բացարձակ գերազանցիկ էր: Բայց երբ առավոտյան տողանին նա գնաց զեկույց տալու, մենք իսկույն տեսանք, որ նա Գրեչկինի հետ համեմատվելու բան չէ: Քայլում էր ոչ այնպես վըստահ, դարձումը կատարեց ո՛չ մաքուր, իսկ երբ զեկույց էր տալիս, ձայնը բոլորովին չէր լսվում:

Շուտով մենք շարունակեցինք դեղաբույսեր հավաքելու գնալ, բայց այժմ արդեն՝ արջախաղողի, դաշտից հերբարիումներ հավաքելու: Իսկ մի շաբաթ հետո իրոք շոգենավ նստեցինք: Եվ այնուամենայնիվ Գրեչկինի պակասն զգում էինք: Բանը միայն այն չէր, որ նոր հրամանատարը մի վատ սովորություն ուներ՝ մի գլուխ համրում էր ջոկատի անդամներին, այլ այն, որ շարունակ հիշում էինք Գրեչկինին...





# Ռուս մեծ հեղափոխական-դեմոկրատը

(Ծննդյան 150-ամյակի առթիվ)



Նիկոլայ Գավրիլովիչ Չերնիշևսկին ծնվել է 1828 թ. հուլիսի 12-ին, Սարատով քաղաքում: Մանկության տարիներին իր հասակակիցներից տարբերվում էր արտակարգ ընթերցասիրությամբ: 1844 թ., երբ ընդունվեց տեղի հոգևոր ճեմարանը, տասնվեցամյա պատանին տիրապետում էր լատիներեն, հին հունարեն, եբրայերեն, ֆրանսերեն, գերմաներեն, լեհերեն և անգլերեն լեզուներին: Հայրը ցանկանում էր նրան հոգևորական դարձնել, բայց խելացի ու կարգացած պատանին, որն արդեն նկատում էր հայրենի քաղաքի խեղճությունը, ավնվականների ու պաշտոնյաների կամայականությունը և արհեստավորների, մանուֆակտուրային բանվորների ու ճորտ գյուղացիների թըշվառությունը, չէր կարող սահմանափակվել աստվածաբանության նեղ կաղապարում: 1846 թ. նա թողեց ճեմարանը, մեկնեց Պետերբուրգ և ընդունվեց համալսարանի պատմաբանասիրական ֆակուլտետը: Ուսանողական տարիներին (1846—50) ձևավորվեց նրա հեղափոխական-դեմոկրատական աշխարհայացքը:

1853 թ. Չերնիշևսկին գրեց և հրատարակեց իր առաջին՝ «Արվեստի գեղագիտական հարաբերությունը իրականության հետ» աշխատությունը, որտեղ ընդվզում էր գեղագիտության մեջ իշխող հեգելյան այն դրույթի դեմ, թե իրականությունը կույր է օբյեկտիվ գեղեցկությունից և անկատար է, անցողիկ է արվեստում արտահայտված գեղեցիկի համեմատությամբ: «Գեղեցիկը կյանքն է»,— հայտարարում է Չերնիշևսկին: Ռուսաստանի հեղափոխական երիտասարդությունը բարձր գնահատեց նրա աշխատությունը: «Դա Չերնիշևսկու արձակած առաջին կայծակն էր»,— հուշերում գրում է Ն. Վ. Շելգունովը:

1854 թ. Չերնիշևսկին իր կյանքն ու գործունեությունը կապեց Ռուսաստանի ամենաառաջադեմ պարբերականի՝ բանաստեղծ Ն. Նեկրասովի խմբագրությամբ լույս տեսնող «Սովրեմեննիկ» ամսագրի հետ, որը հիմնադրել էր Ա. Պուշկինը: Չերնիշևսկու, ապա նաև նրա պինակից Ն. Դոբրոլյուբովի հրապարակախոսական ակտիվ գործունեության շնորհիվ ամսագիրը շուտով դարձավ հեղափոխական-դեմոկրատների գաղափարական կենտրոնը: Չերնիշևսկին ոչ միայն պահանջում էր վերացնել ինքնակալությունն ու ճորտատիրությունը, այլև՝ ընդհանրապես, մարդու կողմից մարդու շահագործումը: Նա ուտոպիստ-սոցիալիստ էր և երազում էր գյուղական համայնքի միջոցով կառուցել հավասարների, ապատ աշխատավորների երջանիկ հասարակարգ:

Ռուսաստանում բարձրացել էր

## ԼԵՌՆԱՅԻՆ ԳԻՇԵՐ

Մութը սարին մշուշ փռեց,
Ծածկեց մոտիկն ու հեռուն.
Խորհրդավոր գիշեր իջավ
Զմրուխտ հագած լեռներում:
Քարափները երկինք ձգվող
Դարձան ձորի պահակներ.
Ստվերները՝ նրանց ծունկին
Հենակ արած մահակներ:
Հարդագողի հարդով լցված
Ճամփին երկար ու բարակ
Աստղը դարձավ ոսկեպայծառ
Հեռուն չվող մի կարապ:
Ու մեր կողքին, ինչպես խոտում
Ծխախոտից ընկած կայծ,
Լուսատտիկն ահա մթնում
Կեսգիշերին բոցկլտաց:

Անտակ ձորից, ինչպես հորից,
Լսվեց հանկարծ մի խուլ ձայն.
Թփերի մեջ երկու շդիկ
Խորունկ քնից արթնացան:
Ու վախեցած երկու վարազ,
Խոխոռոցով խնկլագար,
Գլորվելով ձորը թռան
Որպես երկու անտաշ քար:
Եվ լուսաստղը երբ լուսնի հետ
Ցայգալույսին շողշողաց,
Ծաղկի շուրթին շաղիկն ընկած
Սարսուռ դարձավ ու դողաց:
Իսկ Մեծ Արջը աղջամուղջին
Մեր ականջին շշնջաց.
— Ձեր աստղամոտ սարալանջին
Օրն երկար է, քունը՝ կարճ:

գյուղացիների հուզումների հեղափոխական ալիքը ընդդեմ ճորտատիրության: Ցարիզմն անկարող էր ճնշել ժողովրդական բողոքը: Պալատում և մեծահարուստ ազնվականների սրահներում սկսել էին խոսել գյուղացիական ռեֆորմի մասին: Երբ կազմվեց գյուղացիական ռեֆորմի նախագիծը, Չերնիշևսկին առաջինն էր, որ բացահայտեց նրա պահպանողական, թալանչիական բնույթը: «Իշխողները չեն կարող հասարակությունը մաքրել նրա զարգացումը արգելակող աղբից, որովհետև վախենում են աղտոտել ոտքերը,— գրում էր նա,— այդ աղբը կարող է մաքրել միայն հասարակ ժողովուրդը, ինչպես որ ոչ թե Ապոլոնը, այլ Հերակլեսը մաքրեց Ավգյան ախոռները»: 1861 թ. Ռուսաստանում տարածվեց Չերնիշևսկու **«Ողջույն տերունական գյուղացիներին նրանց բարի կամեցողներից»** կոչը, որտեղ նա գյուղացիությանը բացատրում էր, որ ազատության և երջանկության միակ ճանապարհը հեղափոխությունն է, հարկավոր է միավորվել և զինված պայքարով տապալել շահագործողների իշխանությունը:

1862 թ. հուլիսին, երբ մարել էր հեղափոխական ալիքը, ցարական կառավարությունը ձերբակալեց Չերնիշևսկուն: Երկու տարի նա անցկացրեց Պետրոպավլովյան ամրոցում: Այստեղ նա գրեց «Ի՞նչ անել» վեպը, որը իր ձևով և բընույթով նոր երևույթ էր ռուս գրականության մեջ: «Ո՞վ չի ընթերցել ու վերընթերցել այդ նշանավոր ստեղծագործությունը,— գրել է Գ. Պլեխանովը:— Ո՞վ չի հրապուրվել նրանով, ո՞վ նրա բարերար ազդեցության տակ չի դարձել ավելի մաքուր, ավելի կենսունակ ու խիզախ: Ո՞ւմ չի ցնցել գլխավոր անձանց բարոյական մաքրությունը: Ո՞վ այդ վեպի ընթերցումից հետո չի խորհել սեփական կյանքի մասին, խիստ ստուգման չի ենթարկել սեփական ձգտումներն ու հակումները: Բոլորս էլ նրանից բարոյական ուժ ենք քաղել և պայծառ ապագայի հավատ»: 1864 թ. Չերնիշևսկին դատապարտվեց տաժանակրության, յոթ տարի տառապեց անդրբայկալյան հանքախորշերում: 1871 թ. որպես աքսորական տեղափոխվեց Յակուտիայի Վիլյուսկ բնակավայրը: 1874 թ. նրան պաշտոնապես խոստացան ազատություն, բայց պայմանով, որ ներման խնդրագիր ներկայացնի: Չերնիշևսկին հրաժարվեց: Նա ինը տարի էլ ապրեց Վիլյուսկում: Ռուսաստանի առաջադեմ հասարակայնությունը չէր մոռացել նրան: Հեղափոխականներ Գ. Լոպատինը և Ի. Միշկինը 1875 թ. վտանգի ենթարկելով իրենց կյանքը, փորձեցին փախցնել նրան աքսորից, բայց ժանդարմները լավ գիտեին Չերնիշևսկու գինը, նրան երբեք աչքաթող չէին անում: Միայն 1883 թ. Չերնիշևսկուն թույլատրվեց տեղափոխվել Աստրախան: Չնայած քայքայված առողջությանը, նա անդադար աշխատում էր, հոդվածներ գրում, թարգմանություններ անում: 1889 թ. Չերնիշևսկին վերջապես իրավունք ստացավ բնակվել հայրենի Սարատով քաղաքում, որտեղ էլ մի քանի ամիս անց՝ հոկտեմբերի 17-ին վախճանվեց:

Չերնիշևսկու՝ մեծ մտածողի և ժողովրդասերի վառ կերպարը օրինակ է հանդիսացել, դաստիարակել շատ հեղափոխական սերունդներ:

*ՎԱՐԴԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

# ՀԵՔԻԱԹ ԸՆՁԱՌՅՈՒԾԻ

*ԱԲԻԳ ԱՎԱԳՅԱՆ*



*Ընձառյուծին կենդանաբանական այգի բերեցին երեկոյան մոտ: Ողջ գիշերը նա մռնչում էր և մագիլներով ու կրծքով ուզում էր խորտակել վանդակի ձողերը: Հարևան վանդակներում նրա անհանգստությամբ վարակվեցին նաև մյուս գազանները և քուն չունեցան: Վերջապես ընձառյուծը հոգնեց ու քնեց: Երազում նա տեսնում էր հայրենի տափաստանը, որի անեզրությունը նրան խելացնոր հրճվանք էր պատճառում:*

*Գիշերն անցավ գարնանային ամպերի որոտներով, փայլատակումներով, պաղանցիկ տեղատարափներով: Լուսաբացին նա աչքերը բաց արեց և խռովված նայեց շուրջը: Ձախ կողմում ուռիներով ու բարդիներով եզերված պառիվեր ծառուղի էր, աջում՝ առյուծների վանդակը, որտեղ կողք-կողքի նստել էին արու և էգ առյուծներն ու իրենց խաժ, կարմրացած աչքերը հառել նրան: Նրանք երկուսն էլ արդեն վաղուց ապրել, վերջացրել էին երիտասարդական տարիները, հիմա վաղ գարուն էր, բայց նրանք իրենց կյանքի խոր աշունն էին ապրում: Դիմացը, ճանապարհից այն կողմ, կողք-կողքի շարված էին գայլերի, աղվեսների, բորենիների և ապա՝ բվեճների վանդակները: Բացվում էր գարնանային պայծառ երկնքով առավոտը, բայց բվեճների համար մթնշաղ էր սկսվում: Նրանք թառել էին վանդակում տեղադրված չոր ծառերի ճղներին, փակել էին խոշոր, կլոր աչքերը*

# Հայաստանը՝ ռուս նկարիչների աչքերով

1826—1828 թթ. ռուս-պարսկական պատերազմի ժամանակ, ռուսական բանակի շարքերում էին գտնըվում ռուս գրողներ, նկարիչներ, այդ թվում և ականավոր ռազմանկարիչ Վ. Ի. Մոշկովը: Այդ տարիներին նա ստեղծել է Հայաստանին նվիրված մի շարք նկարներ, որոնց թվում Սարդարապատի հերոսական ճակատամարտը և Երևանի բերդի առումը պատկերող նկարները:

Հուսական շնչով է պատկերել Մոշկովը 40 000 հայերի ներգաղթը ազատագրված Արևելյան Հայաստան: Ի դեպ նշենք, որ այդ հարցում մեծ և վճռական դեր է խաղացել ռուս մեծ գրող Ա. Ս. Գրիբոյեդովը, որը մշակել է Թուրքմենչայի պայմանագիրը և հատկապես 15-րդ կետը, համաձայն որի հայերը հնարավորություն էին ստացել հայրենիք վերադառնալ:



Վ. ՄՈՇԿՈՎ—40000 հայերի գաղթը 1828 թ.

Տաղանդավոր ռազմանկարիչը ցույց է տվել գաղթի դժվարությունները, միաժամանակ նաև արտահայտել է հայրենիք վերադարձող մարդկանց լավատեսությունը և նրանց երախտագիտությունը գաղթը ղեկավարող գնդապետ Եղիազար Լազարևին, որը պատկերված է նկարի կենտրոնում:

Ա. ԲԱԲԱՅԱՆ
Երևան քաղաքի պատմության թանգարանի բաժնի վարիչ

# ԵՎ ԲՈԼՈՐԱԼՈՒՍՆԻ ՄԱՍԻՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

և թվում էր, թե այս զարմանալի աշխարհին նայում են իրենց կեռ ու դաժան կտուցներով:

— Դատելով քո տեսքից, դու պետք է որ խառնածին լինես, հարևա՛ն,— խոսողը էգ առյուծն էր,— պոչդ ու թաթերդ տափաստանային են, իսկ ականջներդ ու մորթիդ տափաստանային չեն, սատանան գիտի, թե որտեղից են:

Արու առյուծը հաստատեց.

— Ամուսինս իրավացի է, դու միայն կիսով ես տափաստանային: Ինչո՞ւ ոչինչ չես ուտում, ուտելիքըդ երեկվանից մնացել է: Կե՛ր, քեզ պատեհատ մի՛ տուր, այստեղ այնքան էլ վատ չէ, օրը երկու, երբեմն երեք անգամ մեկ ուտեցնում են, ստիպված սար ու ձոր չես ընկնի՝ եղջերուի կամ քարայծի մի կտոր լեշի համար:

Ընձառյուծը դժվարությամբ բարձրացավ տեղից. մկանները ցավագնորեն տնքում էին, մոտեցավ, հոտոտեց կարմիր լեշի խոշոր կտորը, բայց չկերավ, միայն թիթեղե ամանից ջուր խմեց ու կրկին վերադարձավ իր՝ տեղը, ձգվեց գետնին, այս անգամ երեսով դեպի պատը: Նա չէր ուզում տեսնել հարևաններին, դրանց կառամած, քնձոոտ տեսքն իր մեջ չարություն ու պղվանք էր առաջացնում: Քնեց: Երազում նորից նրա առջև տարածվեց անչափելի խորությամբ տափաստանը, վերջալույսին արևի հրազունդը, որից տափաստանի տարածքը դառնում է կարմիր, իսկ ստվերները՝ ձյութի պես սև: Հենց այդ ժամանակ էր, որ մայրը նախապզալով բոլորալուսնով գիշերվա գալուստը, դուրս էր գալիս որջից ու կարհուրելի մռնչյուններ արձակելով բարձրանում էր մոտակա բլուրի գագաթը: Այն ժամանակ ինքը դեռ կորյուն էր, հայրը նրան թողնում էր որջում և գնում էր մորը կան-

չելու: Մայրն ամուսնու թախանձանքներն անպատասխան էր թողնում:

Ա՜խ այդ բոլորալուսնով տափաստանային գիշերները...

Երազի շքեղությունից ու վեհությունից ընձառյուծը փռշտաց ու արթնացավ: Դիմացին տեսավ պատը, հետո՝ վանդակի ձողերը, միրտն ուռավ, շունչը քարացավ կրծքի տակ, նա դունչը սեղմեց թաթերի արանքը և կամացուկ լաց եղավ:

— Դու որքա՜ն շատ ես քնում, որդի՛ս,— լսվեց ծեր առյուծի ձայնը,— վե՛ր կաց, ուտելի՛քդ կեր:

Էգ և արու առյուծները նորից նստել էին կողք-կողքի և տխուր աչքերով նայում էին ընձառյուծին: Երբ սա գլուխը բարձրացրեց, նրանք տեսան արցունքները:

— Քեզ մի՛ կործանիր, որդի՛ս,— ասաց էգը,— ժամանակն ամեն ինչ մոռացնել կտա:

Արուն հաստատեց.

— Ամուսինս իրավացի է, դու դեռ ջահել ես և չգիտես, թե ժամանակն ինչեր է անում:

— Ճշտով, երբ եղանակները տաքանան, մեզ մոտ հետաքրքիր կլինի,— խոսեց էգը,— մեզ այցելության կգան շատ մարդիկ, հատկապես շատ երեխաներ, այգու բոլոր ծառուղիները կլցվեն մարդկանցով ու նրանց աղմուկով, չես էլ նկատի, թե երբ է լուսանում, երբ մթնում:

Արուն հորդորեց.

— Դու լաց ես լինում, որդի՛, և դա քեզ սազական չէ, հիշի՛ր, որ քո ցեղը տափաստանների ու անտառների տիրակալն է եղել:

Ընձառյուծը հիշեց դա և արտասվելու համար ամոթ զգաց:

Կեսօրին եկան սպիտակ խալաթներ հագած ուտելիք մատակարարող մարդիկ: Ընձառյուծի վանդակի առջև նրանք բավական երկար մնացին: Նրանցից մեկը հիացմունքով բացականչեց.

— Աստվա՜ծ իմ, ի՜նչ մորթ, ի՜նչ գեղեցկություն...

— Զարմանալի է, նա ոչինչ չի կերել,— ասաց երկրորդը:

Հետո ձողերի արանքից կեռով դուրս քաշեցին երեկվա միսը և նոր բաժին մտցրին ներս: Ուտելիք մատակարարողներն սպասեցին այնքան ժամանակ, մինչև ընձառյուծը առանց ցանկանալու կերավ ու վրայից ջուր խմեց:

— Դու ինչո՞ւ ես երեսով շարունակ դեպի պատը նստում,— հարցրեց էգ առյուծը,— լավ չէ, դրանից սիրտդ կնեղվի:

Ընձառյուծը վերջապես խոսեց.

— Չեմ ուզում տեսնել դրանց՝ այդ գայլերի, աղվեսների, բորենիների կերպարանքները: Ի՜նչ բաներ են դրանք՝ գազանների թափթփուկներ, աշխարհ են եկել միայն գողանալու, խորամանկելու, դիակներ հոշոտելու համար:



Արու առյուծը հաստատեց.

— Իրավացի ես դու, որդի՛, դրանք արժանի չեն նույնիսկ մեր արհամարհանքին:

— Իսկ դու չասացիր,— հարցրեց էգը,— ինչպե՞ս է, որ դու և՛ տափաստանային ես, և՛ տափաստանային չես, վկա են քո ականջները, մորթիդ, պոչդ և թաթերդ:

Ընձառյուծը չհերքեց.

— Ճիշտ եք նկատել, հարգարժանե՛րս, ես խառնածին եմ, մայրս հյուսիսի անտառներից է, իսկ հայրս ծնվել է հարավային տափաստաններում: Ինչ-որ ժամանակ ուժեղ ցնցում է եղել տափաստանի ընդերքներում և բոլոր գազանները թողել փախել են ու ցրիվ եկել աշխարհով մեկ: Այդ բոլորի մասին ինձ պատմում էր մայրս, երբ մենք մենակ էինք լինում մեր որջում և իմ հայրը գնացած էր լինում որս բերելու: Ամբողջ հարավային տափաստանում և հետո, հյուսիսային անտառներում հայրս նշանավոր է եղել իր կատաղության ուժով ու արիությամբ: Հիշում եմ, երբ մենք հյուսիսային անտառներից եկանք հարավ՝ հորս ծննդավայրը, տեսանք, որ հորս երբեմնի որջին ինչ-որ բորոտ, զարշելի գազանների մի խումբ է տիրացել, հայրս դրանց դուրս քշեց որջից, և մենք մինչև մեր աչքը կծկեինք՝ հոշոտեց նրանց ու փափուկ մորթիները փռեց մեր որջում:

— Ասացի, որ ինչ-որ հեռավոր ժամանակ,— շարունակում է նա,— ուժեղ ցնցում է եղել հարավային տափաստանի ընդերքում և բոլոր շնչավորները սարսափահար փախել են ու ցրիվ եկել աշխարհով մեկ: Նրանցից շատերին սովը տանում, հասցնում է հյուսիսային անտառները, դե, իսկ այնտեղ կերն առատ է լինում և՛ գազանների, և՛ մյուս կենդանիների համար: Մի անգամ որսի ժամանակ հայրս անտառում հանդիպում է մորս: Մայրս անտառում եղած բոլոր ընձառյուծներից ամենագեղեցիկն է լինում, այ, տեսեք, այս մորթն ու ականջներս ես ժառանգել եմ նրանից, իսկ թաթերս ու մկաններս հայրս է ինձ պարգևել: Հայրս մտերմանում ու տիրանում է նրան: «Նա գեղեցիկ չէր,— պատմում էր մայրս,— և բացի դա, մենք տափաստանցիներին չէինք սիրում, նրանք

կատաղի էին, նրանց արյունը միշտ եռ էր գալիս, որովհետև տափաստանում կյանքը դաժան է: Բայց հայրդ պարհուրելի ուժ ուներ, թաթի մի հարվածով ջարդուփշուր էր անում ամենախոշոր վարազի մեջքը, իսկ իշայծյամներն ու եղնիկները նրա համար՝ ոնց որ ճանճեր: Ես նրա ուժն ու արիությունը սիրեցի»:

— Ասացի, որ անտառում կերն առատ էր ու ապրելը՝ հեշտ, բայց հայրս կարոտում էր տափաստանը,— շարունակում է ընձառյուծը,— իրիկնամուտներին նա պառկում էր բացատի խոտերին և երկար թախծում: Ի վերջո մայրս մեծ, շատ մեծ կոհողություն արեց, նա համաձայնեց թողնել անտառները և գնալ հորս հայրենիքը, որտեղ ո՛չ աղբյուրներ կան, ո՛չ քամիներից զալարվող ծառեր, ո՛չ լուսաբացային ցողաշաղախ սիպախոտ, ո՛չ տամուկ թավուտներ, կան միայն անչափելի տարածություններ, դաժան կյանք և խենթացնող բոլորպյուսին:

Հյուսիսից հարավ ձգվող ճանապարհը թվում էր անվերջանալի: Մենք գնում էինք մթին ձորերով, դժվարին լեռնակածաններով, երբ հոգնում էինք, դադար էինք առնում որևէ հինավուրց ծառ՚ի տակ, այո՛ անպայման ծառի տակ, որովհետև մայրս սիրում էր պառկել ու քնել ծառին՝ դունչը դրած մի թաթի վրա, մյուս թաթը ճյուղից կախ գցած, դա անտառաբնակ ընձառյուծների սովորույթն է, որն հատուկ չէ տափաստանցիներին:

Վերջապես եկանք հասանք հորս երբեմնի բնակատեղին ու սկսեցինք ապրել: Հորս արյունը խոսեց իմ մեջ, և ես սիրեցի տափաստանը, նրա անեզրությունը, դաժանությունը, այն քարացած լռությունը, որը հապարավոր աղմուկներից ավելի ահավոր է: Հայրս արևածագից առաջ գնում էր որսի և պատահում էր, որ վերադառնում էր իրիկնամուտին, նա իր հետ բերում էր ջարդված ոսկորներով եղջերուներ, իշայծյամներ ու էլի ինչ-որ կենդանիներ, որոնք միայն տափաստաններում են բնակվում: Ես ու մայրս մնում էինք որջում: Նա թախծում էր, ինչպես թախծում էր հայրս հյուսիսում, կարոտում էր անտառները, բայց ոչինչ չէր ասում, միայն երբ մոտենում էր լուսնի բոլորվելու ժամանակը, նա դառնում էր դիվահար: Մենք՝ ես և հայրս, վախենում էինք նրանից: Երբ ես ցանկություն էի ունենում հպվել նրան, նա առջևի թաթով ինձ մի կողմ էր շպրտում ու մռնչում էր. «Անիծվի՛ տափաստանցիների սերունդը»: Հետո, երբ արևի արնակարմիր հրագունդը սկսում էր իջնել դեպի հորիզոնի գիծը, նա մենակ բարձրանում էր մոտակա բլուրը, նստում էր դրա գագաթին ու երկար, երկար նայում հորիզոնի այն կողմը, որի խորքերում իր աշխարհն էր, հյուսիսի անտառները՝ տամուկ ու մթին թավուտներով, քամիներից զալարվող ծառերով, աղբյուրներով, լուսաբացային ցողաշաղախ սիպախոտով: Պատահում էր, որ հեռու ճանապարհով ուղտեր ու ջրհներ էին անցնում, հայրս անհանգստանում էր, հորդորում էր մորս, որ այդպես չցցվի բլուրի գագաթին, բացատրում էր, որ այդ ուղտապաններն ու ջրհեպանները կարող է հրացեն ունենան և կրակեն, ախր մորս դուրս ցցած կուրծքն ու փայլատակող մորթը այդ բարձունքի վրա պետք է որ գայթակղեցնող թիրախ լիներ: Մայրս ուշք չէր դարձնում հորս թախանձանքներին ու հորդորներին, բլրագագաթին նա մնում էր այնքան, մինչև մթնշաղը թանձրանում էր և բարձրանում էր բոլորպյուսինը: Այդ ժամանակ նա ավելի էր դիվահարվում, ճիրաններով փորփրում, հոշոտում էր հողը և նրա սարսափելի մռնչյունից նույնիսկ հայրս վախից կծկվում էր...

Բայց ահա վրա հասավ այն, ինչին մենք այնպես տագնապով սպասում էինք: Մի իրիկնամուտի, երբ մայրս նորից բարձրացել էր բլուրի գագաթն ու սպասում էր լիալուսնի երևալուն, հայրս հեռու ճանապարհին ձիավորներ նկատեց: Նրանք կանգնել ու նայում էին բլուրի կողմը: Հայրս իսկույն գլխի ընկավ, որ դա տափաստանում թափառող ավազակախումբն է: Որքան խնդրեց, հորդորեց, որ մայրս իջնի, նա մնաց անդրդվելի: Եվ հանկարծ ճանապարհի վրա ափտակ, փոքրիկ ծուխ երևաց ու դրան հաջորդեց մի ահռելի ճայթյուն: Մենք տեսանք, թե ինչպես մայրս նստած տեղից մի խելագար ցատկ կատարեց դեպի վեր և



## ՕԳՈՍՏՈՍԻ 20-Ը ՕԴԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐՆ Է

*մեջքով թավալգլոր սահեց պատիթափից: Ես փոքր էի դեռ ու չէի ըմբռնում մահվան իրողությունը, ինձ միայն վարմացնում էր մորս կրծքից բխող արյունը, որն խսկույն ծծվում էր բլուրի չոր, պապակ հողում: Իսկ հետո ահա թե ինչ պատահեց: Այնտեղ, բլուրի լանջին, մացառուտ կար, հայրս փորսող տալով սողաց ու դարան մտավ: Բնությունը նրան ուժի և քաջության հետ շնորհել էր նաև խելացություն, մի բան, որից զուրկ են հյուսիսային անտառների ընձառյուծները: Նա համոզված էր, որ ավազակները կգան իրենց ավարի ետևից: Եվ խսկապես նրանք եկան: Չորս հոգի էին: Բլուրի ստորոտին նրանք ձիերից իջան և սկսեցին բարձրանալ: Մեկ էլ կայծակը կարող է այդպես թափով պատռել, անցնել տարածությունը, հայրս իրեն շրջափակող մացառների թփուտները ճեղքեց ու ցատկեց առջևից եկող մարդու վրա, հետո, մինչև մյուսներն ուշքի կգային՝ միրճվեց նրանց մեջ. ես իմ թաքստոցից տեսնում էի, թե ինչպես ատամներով ու մագիլներով պատառոտեց նրանց, հոշոտեց և բլրալանջին թողեց ծվեն-ծվեն եղած հագուստների ու ջարդուփշուր ոսկորների կարմիր մի կույտ: Ստորոտում կանգնած ձիերը տեսնելով այդ սպանդը՝ խելագարվեցին, սկսեցին կարմանալի ձայներով վրնջալ, գետինը դոփելով պտտվում էին, կարծես շուրջպար էին բռնել, հետո հանկարծ պոկվեցին տեղից ու քամու նման սլացան տափաստանով: Հայրս վերադարձավ՝ ականջների ծայրերից մինչև պոչի ծայրն արյունով ներկված, նա եկավ ու փլվեց մորս դիակի կողքին և այդպես մնաց ամբողջ գիշեր: Լուսաբացին նա այլևս չկար. վիշտն էր նրան սպանել...»*

*Ընձառյուծը լռեց:*

*— Հետո ի՞նչ եղավ,— միաժամանակ հարցրին առյուծները:*

*— Հետո ես թողեցի մեր որջն ու բռնեցի հյուսիս տանող ճանապարհը: Բայց տեղ չհասա: Ինձ բռնեցին թակարդով և հետո...*

Կենդանաբանական այգու վրա փռվեց վաղ գարնան խոնավ մթնշաղը: Այգու բնակիչները բոլորը քուն մտան, ամենից ուշ քնեցին առյուծները: Դրանք կենդանաբանական այգում համարվում էին հին բնակիչներ, հազիվ հինգ, վեց տարեկան էին եղել, երբ նրանց բռնել ու բերել էին անապատներից. ավելի քան քսան տարի նրանց աշխարհն ամփոփվում էր իրենց վանդակից երևացող տարածքում, քնած թե արթուն նրանց երազները թևածում էին մինչև իրենց տեսադաշտի սահմանագիծը, դրանից այն կողմ աշխարհը վերջանում էր: Բայց ի՞նչ պատահեց, որ այդ գիշեր նրանց երազներն անցան այգու սահմանագծից ու սկսեցին թևածել մի կարմանալի անծայրածիր աշխարհում, որտեղ հրաբորբոք արևի տակ փռվել էր շիկացած ավազը և ուղտերի քարավանները ծանրաքայլ գնում էին հորիզոնի գծով:

Փարիզի Լե-Բուրժե սալոնում 1965 թ. բացվեց ավիացիայի ու տիեզերագնացության հերթական ցուցահանդեսը: Բոլոր երկրները ներկայացրել էին ավիացիոն տեխնիկայի վերջին նվաճումները: Ամերիկյան Լոկխիդ C-141 բեռնատար ինքնաթիռը եղածների մեջ ամենամեծն էր: Սակայն ամերիկյան մասնագետների հպարտ կեցվածքը կորավ, երբ Փարիզի երկնքում երևաց 80 տոննա բեռ, կամ 720 ուղևոր բարձրացնելու կարողություն ունեցող սովետական ԱՆ-22-ը, որի ստեղծողները նրան տվել էին հունական դիցաբանության հերոս Անթեյի անունը:

Աշխարհում այդ ամենամեծ ինքնաթիռի գլխավոր կոնստրուկտորը Օլեգ Կոնստանտինովիչ Անտոնովն էր:

«Ծանո՞թ է ձեզ մեքենային լիիվ տիրապետելու զգացումը,— մի առիթով ասել է Անտոնովը,— երբ դու կարծես ձուլվում ես նրան, նրա թևերը, թվում է, քեզ, թե քո թևերն են, նրա մարմինը քո մարմինն է, երբ մեքենան այնքան է ենթարկված քեզ, որ դառնում է քո մասը, քո գոյության շարունակությունը...»

Ահա այդ ոգեշնչվածությամբ ստեղծվեց առաջին ԱՆ-2 ինքնաթիռը, որը մե՛ր հայրենիքում և արտասահմանյան շատ երկրներում հայտնի է «Աննուշկա» փաղաքշական մականվամբ: Այդ փոքրիկ ինքնաթիռը մինչև այժմ էլ արտադրությունից չի հանվում, իսկ ԱՆ-երի ընտանիքն այժմ անցնում է մեկ տասնյակից: ԱՆ-երով սահմանված բազմաթիվ համաշխարհային ռեկորդները նրանց թռիչքային բարձր հատկանիշների խոսուն վկայությունն են:

Կիրովոգրադի բարձրագույն օդաչուական դպրոցում տեղի ունեցած դեպքը դեռ երկար կհիշվի: 1963 թ. հրահանգիչ Արամ Բաղդասարովը իր սաներից մեկին ուսուցանում էր ԱՆ-24-ը

# ԱՆ-ԵՐՆ ԱՐԱՐՈՂՆԵՐԸ



*Օ. ԱՆՏՈՆՈՎ*



*Ե. ՇԱՀԱԹՈՒՆԻ*

վարելու գաղտնիքները: Ծրագրով նախատեսված էր անջատել ու միացնել ինքնաթիռի 2 շարժիչներից մեկը: Ուսանողը անջատված շարժիչը միացնելու փոխարեն, սխալմամբ անջատում է նաև երկրորդը: Թվում էր, թե ամեն ինչ կորած է: Սակայն ինքնաթիռի թռիչքային բարձր հատկությունները հնարավորություն տվեցին Բաղդասարովին անջատված շարժիչներով ինքնաթիռը վարել ևս 30—40 կմ ու հաջող վայրէջք կատարել:

ԱՆ-երի աչք՝շոյող համաչափությունն ու անցումների սահունությունը նրանց հեղինակի նաև գեղանկարիչ լինելու վկայությունն է: Այո, նա նաև նկարում է, ցուցահանդեսներ բացում: Ավիակոնստրուկտոր, գեղանկարիչ, գրող (տպագրել է նովելների երկու ժողովածու) ու սպորտսմեն (մինչև օրս նա մասնակցում է թենիսի Կիևի առաջնությանը) Անտոնովը ամեն ինչին նվիրվում է ի սրտե, անմնացորդ: Ժամանակ է գտնում նույնիսկ... հյուսնության համար: Օլեգ Կոնստանտինովիչը ինքն է նախագծել ու պատրաստել իր աշխատանքային սեղանը:

«Թեկուզ մեր նախագծած ինքնաթիռները կրում են իմ անունը, սակայն միամտություն կլիներ կարծել, թե նրանք միայն իմ աշխատանքի արդյունքն են: Եթե «Անթեյ»-ի ստեղծմանը մասնակցած բոլոր աշխատակիցները փորձեին դնել իրենց ինքնագրերը, ապա «Անթեյ»-ի կողերը հապիվ թե բավարարեին»:

Իրոք, մի՞թե կարելի է պատկերացնել որևէ ինքնաթիռի ստեղծում առանց մաթեմատիկոսների տքնաջան աշխատանքի, էլեկտրասնուցման սիստեմի նախագծման կամ առանց ամրության հաշվարկների: Երբ Անտոնովը թողնում էր ամեն ինչով ապահովված Մոսկվայի կոնստրուկտորական բյուրոն՝ Նովոսիբիրսկում նորը հիմնելու նպատակով, նա ոչինչ չտարավ իր հետ, բացի... մի քանի աշխատակիցներից: Ընտրյալների մեջ էր նաև մեր հայրենակից Ելիզավետա Շահաթունին: Անտոնովի կարծիքով, Շահաթունին այն մասնագետն էր, որի ուսերին պետք է դրվեր նոր կոնստրուկտորական բյուրոյում ամրության հաշվարկների ողջ ծանրությունը: Նա չսխալվեց:

Ելիզավետա Շահաթունին նախ Նովոսիբիրսկում, ապա Կիևում աճեցրեց ամրության հաշվարկներով զբաղվող մի hսկայական, հոյակապ կոլեկտիվ, որը ղեկավարում է մինչև օրս:

Թեկուզ Շահաթունին արդեն ճանաչված էր գիտական շրջաններում, բայց նրան մեծ հռչակ բերեցին ԱՆ-22-ի նախագծման աշխատանքները:

Որպեսզի պարզ դառնա ամրության հաշվարկների նշանակությունը, ասենք, որ եթե պատահաբար որևէ ճեղք բացվի ինքնաթիռում, դա կհանգեցնի ինքնաթիռի արտաքին ձևի դեֆորմացիայի, հետևաբար և աղետի:

Շահաթունին թե ինչպիսի նրբությամբ ու մանրակրկիտությամբ է կատարել ԱՆ-22-ի ամրության հաշվարկները, երևում է և նրանից, որ երբ թռիչքի ժամանակ բացվում է տեռևի լյուկը (անցք՝ բեռների, պարաշյուտային վայրէջքի համար), ապա ինքնաթիռի թռիչքի կայունությունը բոլորովին չի փոխվում:

Երկնքում, թռիչքի ժամանակ, պոչամասի հսկա լյուկը բացելը համաշխարհային ինքնաթիռաշինության մեջ առաջին փորձն էր: Այն պսակվեց հաջողությամբ:

1962 թվականին, գլխավոր կոնստրուկտոր Անտոնովի հետ միասին, Ելիզավետա Շահաթունին արժանացավ լենինյան մրցանակի:

*ԱՐՄԵՆ ՀԱՄԲԱՐՅԱՆ*




ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
*Բանասիրության դոկտոր*

### 4. ՃԸԳՐԻՏ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ԼԵԶՎԻ ՈՒՆԵՑԱԾ ԿԱՊԻ ՄԱՍԻՆ

Ավելորդաբանություններից ազատ խոսքի հմայքը և դրանցով լեցուն խոսքի տհաճությունը մենք զգում ենք ամեն քայլափոխի: «Շատախոս մարդ է»,— քամահրանքով ասում ենք այնպիսի մեկի մասին, որ ավելորդ շատ բան է ասում, և խուսափում ենք նման մարդու հանդիպելուց:

Ճիշտն ասած, այդ բառն այնքան էլ ստույգ չի արտահայտում բանի էությունը: «Շատախոսության» մեջ տհաճը խոսքի ոչ թե շատ լինելն է, այլ ավելորդություններով, կրկնություններով, պարապ դարձվածքներով լեցուն լինելը: Այլապես՝ ո՞վ հափշտակությամբ չի լսի սեղմ ու հետաքրքիր խոսող ուսուցչին կամ պեկուցողին, որքան էլ շատ խոսեն նրանք:

Նույնը և գրականության մեջ. «շատախոս» գրողը նա չէ, ով շատ է գրում, ծավալուն գործեր է գրում (Լև Տոլստոյի «Պատերազմ և խաղաղությունը» նս շատ է՝ ամբողջ չորս հատոր), այլ նա, ով անհամ ու անստույգ է գրում, որքան էլ ծավալով փոքր լինի գրվածքը:

Լավ խոսքը սեղմ ու ստույգ խոսքն է, իսկ այդպես խոսելու կամ գրելու համար հարկավոր է վարժվել այդպիսի մտածողության:




ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Պտուղները գոհար դառած՝
Շողշողում են այգում,
Կեռասենու ճյուղին թառած՝
Մի թռչնակ է երգում.

— Մի կորիզ էր՝ դարձել է տունկ,
Տունկը՝ կեռասենի,
Հիմա բերքով է նա ժպտում,
Անուշ ու նազելի:

Ցերեկները նրա ճյուղքին
Ես այնքան եմ երգել,
Որ քնքշացել է իմ երգից,
Ճյուղերն է վար թեքել:

Եվ դուք երբեք չզարմանաք,
Սա երազ չէ, նրազ,
Որ ես՝ փոքրիկ, փոքրիկ թռչնակ,
Բայց ուտում եմ կեռաս:

Պտուղները գոհար դառած՝
Շողշողում են այգում,
Կեռասենու ճյուղին թառած՝
Մի թռչնակ է երգում:





Նկ. ՌՈՒԲԵՆ ԹՈՒՄԱՍՅԱՆԻ

## Առուն

ԳՐԻԳՈՐ ՄԱԶՄԱՆՅԱՆ

Ժայռից մի բեկոր պոկվել էր, ընկել
Այն առվի ճամփին, որ դաշտ է տանում:
Անտաշ բեկորը քիթը վեր տնկել,
Նայում էր չուրջը ու ճպարտանում:

— Ուզե՞մ կփոխեմ այս առվի հունը,—
Հոխորտում էր նա ու առվին նեղում,—
Ես ծանր եմ, հզոր, ժայռ է անունս
Ու միշտ հաստատ եմ մնում իմ տեղում.»

Առուն համբերեց, երկար համբերեց,
Մի օր էլ իջավ վարարած, թափով
Ու քշեց, ճամփին ինչ որ պատահեց,
Ապա դաշտ վազեց ծիծաղով, ծափով...

Այստեղ է, որ դպրոցականի, նույնիսկ ամենաբանաստեղծական խառնվածք ու հակումներ ունեցող դպրոցականի ամենալավ օգնականները կարող են լինել առարկաներ, որոնք առաջին հայացքից ոչ մի առնչություն չունեն գրականության ու բանաստեղծության հետ՝ ֆիզիկան, մաթեմատիկան, քիմիան, գիտություններ, որոնք, ի տարբերություն հասարակական և բնական գիտությունների, կոչվում են ճշգրիտ գիտություններ:

Մեր այն ընթերցողները, որոնք մինչև հիմա կարծում էին, թե դրանք «կապ չունեն» պոեզիայի, գրականության, արվեստների հետ՝ պետք է փոխեն իրենց կարծիքը: Այլապես՝ նրանք կգործեն նույն սխալը, ինչ գործել են իրենց այն նախորդները, որոնք ասել են՝ ֆիզիկա, քիմիա, հանրահաշիվ մե՞կ ինչ, մենք գրող, նկարիչ կամ երաժիշտ ենք դառնալու:

Ինչո՞ւ ենք այսպես դատում և այսքան վստահաբար:

Պատճառն այն է, որ երկրաչափական թեորեմը, ֆիզիկայի կամ մաթեմատիկայի բանաձևը, մնացած ամեն ինչից բացի, մեզ վարժեցնում են ստույգ, սեղմ, տրամաբանված մտածողության, իսկ դա, ինչպես ասացինք, լավ գրելու, լավ խոսելու հիմքն է, հիմքերի հիմքը:

Բերենք օրինակներ. «Հեղուկի (կամ գազի) մեջ ընկղմված մարմինը դուրս է հրվում դեպի վեր մի ուժով, որը հավասար է մարմնի արտամղած հեղուկի (կամ գազի) կշռին» կամ՝ «Մարմնի վրա ուրիշ մարմինների ազդեցության բացակայության դեպքում նրա արագության պահպանման երևույթը կոչվում է իներցիա»,— տեսեք՝ ո՛չ մի ավելորդ բառ և միաժամանակ՝ ո՛չ մի ուրիշ բառի տեղ: Բավական է (կարող եք և փորձել) այս բանաձևերից մի որևէ բառ հանես կամ դրանց մի նոր բառ ավելացնես՝ և տրամաբանությունը կփոխվի, միտքը կխճողվի, մտքի ամուր կառուցվածքը փուլ կգա: Այնպես որ, բացի գիտելիքից, Արքիմեդի և Գալիլեյի այս հայտնագործությունների բանաձևերը (ինչպես շատ և շատ ուրիշ բանաձևեր) լեզվի կիրառության հստակ և գեղեցիկ դրսևորումներ են:

Գեղեցի՞կ,— քմծիծաղով հարց կտան մեր ընթերցողներից ոմանք,— գեղեցիկը բանաստեղծությունն է, այն, ինչ կոչվում է գեղարվեստական գրականություն: Այդ բանաձևերն ի՞նչ առնչություն ունեն գեղարվեստական խոսքի հետ:

Շատ մեծ և անքակտելի առնչություն,— կասենք մենք՝ այս պատասխանի հիմնավորումը թողնելով մեր հաջորդ զրույցին:

## Ամառ

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*



Ամպը քնել է բլուրի թամբին,
Հնում է ձորը ջրի կարոտից.
— Առվա՛կ, դու նոր ես սովորում քայլել,
Բայց թե փախչում ես արդեն իմ մոտից:

Լույսը հրճվում է ծաղիկների մեջ
Ու ջրերի հետ ծիծաղում է, տես.
— Առվա՛կ, դու նոր ես սովորում խոսել,
Բայց թե երգում ես աղջնակի պես:

Քամին ձգել է դաշտի կտավը
Ու արեգակն է այնտեղ նկարում:
— Առվա՛կ, փոքրի՛կս, դու գնում ես դաշտ,
Որ ժպիտ դառնաս նրա գույներում:

Արևը հետո մանուկ առվակից
Փափուկ ու թեթև զգեստ է կարում
Ու ամպի տեսքով փռում է հանգիստ
Թափանցիկ ու մերկ երկնակամարում:

Եվ ձորը, լույսն ու բոլոր գույները
Տխուր լռությամբ նրան են նայում
Ու սպասում են նրանք անհամբեր
Առվակ աղջկա ներքև իջնելուն:

## Կայծակ

*ԳՈՒՐԳԵՆ ԲԱԲԱՅԱՆ*

Ամպերից ծնված մի պարան կայծակ,
Հզոր, համարձակ,
Հրդեհ է վառում ամպի քթի տակ:

Ամպերից փախած մի շաղոտ կայծակ,
Փեշերը արձակ,
Լույսեր է փռում մութ ժայռերի տակ:

Ամպերից ելած մի զիգզագ կայծակ,
Թեժ ու հեռարձակ,
Գոռում է՝ չընկնե՛ք դուք իմ սրի տակ...



## ԿԱԿԱՉ

*ՎԱԶԳԵՆ ԱԽԱՔԵԼՅԱՆ*

Ժայռերի շրթին,
Ծեգից էլ առաջ,
Զարթնել էր արդեն
Մի մանուկ կակաչ:

Ո՛չ ձեռք էր հասնում,
Ո՛չ էլ գառան շուրթ,
Փռված էր վերում
Երկինքը կապույտ:

Բուրում էր անվերջ
Մայր արևի տակ,
Հովին էր տալիս
Իր ցոլքերը տաք:

Մայրամուտի հետ
Բոցկլտում էր նա,
Մութն աստղ էր դնում
Շուրթերի վրա:





# Հունձ

ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ

Թաց գետնի վրա սայլանիվների հետքերը երկար էին թվում և անվերջ: Ամպամած երկինքը լուռ ծանրացել էր ու մթնել: Հանդերում, որտեղ անձրևը տեղ-տեղ ճահիճ էր առաջացրել, տղամարդիկ, երկար սպոգներ հագած, հունձ էին անում:

Տարեցները դանդաղ էին հնձում, և պատանիները, որոնք նոր-նոր էին սովորում հնձել, պրկում էին թևերը, գերանդին շարժում անվարժ և անվստահ: Նրանք առավոտյան շատ շուտ էին արթնանում և հանդում միշտ սպասում էին տղամարդկանց:

— Էս երկու օրը խոտը թաց է, լավ է հնձվում,— ասաց ամենատարեց տղամարդը, որ պատանիներին սովորեցնում էր նաև գերանդի ծեծել:

Տղամարդիկ ծխում էին և նայում պատանիների լասերին: Ծխախոտից նրանց ձայնը խռպոտել էր, և նրանք շուտ-շուտ հազում էին:

— Անտեր երկինքը չի էլ բացվում,— ասաց Աղվանը,— կարտոֆիլը հոտեց, հիմի էսպես էլ կգնա:

Տղամարդիկ նայեցին լուռ ու ծանրացած երկնքին, հետո՝ թեթև մշուշի միջից երևացող գյուղին, որտեղից մի սայլ էր գալիս և փոքրիկ մի երեխա վազում էր սայլի ետևից: Մշուշի մեջ լեռնալանջին եղած գյուղերից ոչ մեկը չէր երևում:

Պատանիները հասել էին հանդամասի ծայրին ու արդեն ծռում էին լասերը, շուռ գալիս, տղամարդիկ աներևույթ ժպտացին, տեսնելով, որ նրանք մի թևի չեն գնում:

— Հրանտը լասի տակը թողնում է,— ասաց ամենատարիքով տղամարդը և ոտքով բարձրացրեց Հրանտի լասը, հնձած խոտը մի կողմ նետեց ու հնձեց տեղ-տեղ մնացած խոտերի փնջերը:

Հրանտը գնում էր առջևից, հոգնել էր, թևերը ցավում էին և, երբ ետ նայեց, նկատեց իր լասը տնտղող հնձվորներին: Նա փորձեց ուշադիր հնձել, չհոգնել: Հեռվի մշուշոտ պատկերները հաճախ ընկնում էին նրա աչքով, և տխրությունը մտնում էր, ինչպես հեռավոր հուշ: Նա մտածեց տղամարդկանց մասին և որոշեց անպայման հարցնել, թե ինչպես են հնձում, որ չեն հոգնում: Նա պզում էր, որ թևերը և մեջքը սովորականից շատ են ցավում ու արդեն դժվարությամբ է առաջ գնում: Հետևից մյուսները հասնում էին և կանգնում, հանգստանում: Հրանտը արագ-արագ շարժում էր գերանդին, և քրտինքը դանդաղ լցվում էր աչքերն ու բերանը: Ոտքերը, որ բոբիկ էին և քերծված, հնձած փշոտ խոզանի մեջ, սայլանիվների պես, հավասար հեռավորություն ունեցող հետքեր էին թողնում:

Հնձած խոտի թաց բույրը, փափուկ մի ուրախության նման, տարածվում էր նրա մեջ: Ուղեղի բոլոր կետերում ծավլում էին երազանքներ, և նա ամենից շատ ցանկանում էր, որ երեկոն շուտ գար: Նա պատկերացնում էր այն պահը, երբ գերանդին ուսին կբարձրանա դպրոցի մոտի ճանապարհով, և Էմման պատահաբար գնալիս կլինի հարևանի տունը: Լուռ, գողունի, իրար կնայեն, ու այդ պահին ինքը նաև կծիծաղի տղաների հետ, իբր՝ ամենևին չի հոգնել:

Հրանտը մտածեց, որ շրջանային թերթում տպագրված իր պատմվածքը Էմման հաստատ կարդացել է: Նա պատկերացնում էր, թե Էմման որոշ տողեր կարդալիս ինչպես է ժպտացել:

Նա գիտեր, որ իր դեմքը պեպենոտ է, արևից այրված ու մի քիչ կոպիտ, բայց այդ պահին իրեն չափազանց գեղեցիկ պատկերացրեց, մենակ ու տխուր:

Մի գորշ գորտ քսվեց նրա ոտքին, չլփաց ջրի մեջ և քիչ հեռվից, ծնոտի տակն ուռեցնելով ու իջեցնելով, անթարթ նայեց նրան:

— Հե՜յ, երեխե՜ք, հե՜յ,— գոռում էր Աղվանը,— եկեք հա՛ց կերեք, հե՜յ:

Հրանտը տեսավ տղամարդկանց մոտ կանգնած մեքենան, մեքենայից իջեցրած դույլով ճաշն ու ջրի բիդոնը:

— Հե-հե՜յ, եկեք հա՛ց կերեք,— գոռում էր Աղվանը,— երեխե՜ք:

Ճաշից հետո տղամարդիկ ծխեցին, խոսում էին, պատանիները պառկել էին, և տղամարդկանցից մի քանիսը ծեծում ու սրում էին նրանց գերանդիները:

Ծերունի խոհարարը դույլը դրեց մեքենայի թափքը, մեքենան գնաց, և թարմ խոզանի վրա մնացին մեքենայի հաստ անվատեղերը:

— Է՜, երեխե՛ք ջան, հլա փոքր եք,— ասաց ամենատարիքով տղամարդը,— հունձ եք անում, բայց լասի տակը թողնում եք:

Մշուշի միջից դուրս լողաց մի աչքը կույր ծեր հանդապահը:

— Ի՞նչ փոքր,— ասաց Աղվանը,— աղջիկ են սիրում, քթների տակ մազը կոխել է, ասում ես՝ փո՞քր են:




# ՎԱՐԴԱԲԼՈՒՐՈՒՄ

Այնտեղ գնալու համար Գյուղացարակում պիտի իջնել Երևանից Ստեփանավան մեկնող ավտոբուսից, թեքվել աջ ու ոտքով շարունակել ճանապարհը: Կարելի է նաև սպասել միջգյուղյա ավտոբուսին կամ համընթաց մեքենայի, ինչպես խորհուրդ տվեցին ճամփաբաժանում սպասողները: Սակայն փոխադրամիջոցի դիմելու դեպքում առաջին անգամ այնտեղ գնացողը շատ բան կըկորցնի: Չի հասցնի ուշադրությամբ նայել ճանապարհի ձախ կողմը գտնվող պանդակատանը, Մեծ հայրենականում պոհված գյուղացարակցիների հիշատակը հավերժացնող մետաղակուռ հուշարձանին, հասակով մեկ կանգնած է զինվորը՝ դեմքին անամոք թախիծ ու կարոտ:

Փոխադրամիջոցով մեկնողը չի ապրի այն ուրախությունը, որ պատճառում են միջգյուղյա ճանապարհի երկու կողմերից ձգվող ծառուղիները, ծաղկած այգիների բույրը, աշնանացան ցորենի շըրջունը, որը լցնում է ողջ էությունդ, արթնացնում հեռավոր ու մոռացված մանկամիտ մի ցանկություն. ոտաբոբիկ վազել գորգի նման խիտ զարնանաշող կանաչի վրայով, հասնել ս. Գևորգ սարի կատարը, որտեղից ակնախինդ տեսարան է բացվում չորս կողմդ:

Նախանձելի բաժին է հասել Վարդաբլուրին. աջ ու ձախ կողմերը գրեթե նույնատիպ սարեր են, իսկ թիկունքում բարձրացել է Լալվարը: Ավելի ուշադիր նայելու դեպքում կհամոզվես, թե բնապատկերը որքան է հարստացնում Վարդաբլուրը երիկող ձորը և կղմինդրե վառ կարմիր տանիքներով գյուղը գարնանային կանաչ թագավորության մեջ իսկական վարդաստան կերևա քեզ:

Սարից իջնելուն պես բանջարանոցում կհանդիպես պահակ Գարեգին քեռուն: Նա բոլորին հավասար աշխատում է և կեսլուրջ, կեսկատակ հանդիմանում մյուսներին.

— Էդ ո՞նց ես փորում, ոնց որ դաշնամուր քոքելիս լինես:

Բրիգադիր Էդիկ Սահակյանը փորձում է կատակով դիտողություն անել նրան, թե ավելի ուշադիր փորիր, պատասխանը չի ուշացնում.

— Փորում եմ, փորելն էլ ո՞նց կլինի, գարդերոբի ոտք հո չե՞մ սարքում...

## ՄԱՅՐԸ

Վարդաբլուրի դպրոցի դուռը կիսաբաց է: Ներս եմ մտնում:

*— Որդդ եք աղջիկ սիրում,— հարցրեց Աղվանը, բայց ոչ ոք նրան չպատասխանեց:*

*Հանդապահի ձին քայլում էր գլուխը ցնցելով, և անշարժ ձիավորը նմանվում էր արձանի:*

*— Մի՛ ամաչեք, ասե՛ք,— ասաց Աղվանը:— Ես էլ եմ սիրել, երբ ձեր չափ էի:*

*Նա նոր ծխախոտ կպցրեց և աղմուկով մաքրեց քիթը:*

*— Երբ հեռվից տեսնում էի,— ասաց նա,— շունչս կտրվում էր, մտածում էի, թե՝ էս է, ոտներս կծալվեն:*

*Նրա աչքերում մի կայծ էր շարժվում, և բոլորը լուռ նայում էին նրան: Բոլորին թվում էր, որ եթե կայծը ցած ընկնի նրա աչքից, ամպերը կհեռանան:*

*Հանդապահը ձին թողել էր, նստել ամենատարիքով տղամարդու մոտ: Նա ծխախոտ կպցրեց և լուռ նայում էր:*

*— Աղվա՛ն քեռի,— ասաց Հրանտը,— իսկ երբ հնձի էիր գնում, սպասո՞ւմ էիր, որ երեկոն շուտ գա:*

*Պատանիները ծիծաղեցին:*

*— Ինչ եք ատամներդ բացում,— պատանիների վրա գոռաց Աղվանը:*

*Նրա ձեռքը, որով ծխախոտ էր բռնել, դողում էր, վեր քշտած շալվարի փողքերը թաց էին, ոտքերը կապտած:*

*— Էդ ո՞ւմ աղջիկն է երեխին տանջում,— ասաց ամենատարիքով տղամարդը:*

*Սկզբում ոչ ոք ձայն չհանեց:*

*— Կարևոր չի,— քիչ ուշացած վրա բերեց Աղվանը:— Իրիկունը, որ տուն ենք գնում, ո՞վ է մեզ ամենից հաճախ հանդիպում:*

*Հրանտը հեռացել էր նրանցից ու գնում էր գերանդու մոտ: Նա մտածում էր, որ տղամարդիկ բոլորն էլ իրար նման են եղել ու տարբեր աղջիկների նվիրված բանաստեղծություններ կամ պատմվածքներ են գրել: Հիմա նրանք բանաստեղծ չեն և ամեն ամառ հունձ են անում: Նրանք ծխում են ու ոչ ոքից չեն ամաչում, պատմում են սիրած աղջիկների մասին ու էլի ոչ ոքից չեն ամաչում:*

*Գիշերը Հրանտը ոչինչ չկարդաց ու ոչինչ չգրեց: Նա մի երազ տեսավ, իբր երազում ինքը հունձ էր անում ու չէր հոգնում: Իսկ Էմման արտի եզրին կանգնած կանչում էր.*

*— Հե՜յ, Հրա՜նտ, արի հա՛ց կեր, հե՜յ...*

Անսովոր լռություն է տիրում բակում, միջանցքներում ու անգամ դասասենյակներում: Թեև աշակերտներ չկան ու հանգստյան օր է, սակայն կոմերիտմիության 60-ամյակին, Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միավորվելու 150-ամյակին, նոր երթին ու երթուղիներին նվիրված նյութերը վկայում են, որ պիոներական դրուժինայի առօրյան լարված ու հետաքրքիր է անցնում: Քիչ անց, երբ ծանոթանում էի Հայրենականում զոհված 140 համագյուղացիների մասին պատմող նյութերին ու դիտում նկարները, որոնք նույնպես պիոներներն են հավաքել ու ձևավորել, աննկատելի մոտեցավ Սաթենիկ տատիկը: Նրա դեմքին ասես տառապանք ու վիշտ էր քանդակված:

— Սրանք իմ որդիներն են,— ցույց տալով Նապոլեոն ու Կոլյա Նիկողոսյանների խունացած լուսանկարները, շշուկով ասաց նա:— Նրանց հայրն էլ չվերադարձավ: Անաստված պատերազմը կիսեց մեր ընտանիքը, երեքին տարավ, երեքիս թողեց,— ու աչքերի արցունքը թաքցնելով՝ հեռացավ կես երջանկությամբ ապրող տատիկը:

Լուսանկարներից հեռացող տատիկին էին նայում բոլորը:

## ԴՐՈՒԺԻՆԱՆ ԵՐԹՈՒՄ

Վարդաբլուրի պիոներական դրուժինայի բոլոր ջոկատները սիրում են ամեն ինչ ճիշտ ու խնամքով անել: Պիոներները մեկ օրում տասը տոննա մետաղի ջարդոն ու 600 կգ. թղթի թափոն հավաքեցին «Միլիոն՝ հայրենիքին» օպերացիայի գծով: Դպրոցի բոլոր աշակերտները հետաքրքիր գործեր են կատարում հատկապես «Հյուսիսային ծիածան» էքսպեդիցիայի ուղղությամբ: Բացի պատմության խմբակի ընդլայնված պարապմունքներից, որոնց ընթացքում աշակերտները դասախոսություններ են կարդում, պիոներները բեմադրել են առանձին հատվածներ «Վերք Հայաստանի» վեպից, արշավի են մեկնել Կարմիր բանակի մարտական հետքերով: Շնորհալի աշակերտների ուժերով ցուցահանդես են կազմակերպել նվիրված այդ մեծ ու պատմական տարելիցին: Առանձին ցուցանմուշներ՝ Երևանի բերդի մակետը, բրինձի հատիկներից պատրաստած ՍՍՀՄ գերբը, պլաստիլինից՝ ՀՍՍՀ աշխարհագրական քարտեզը, մեծ հմտությամբ ու վարպետությամբ էին պատրաստել նրանք: Իսկ հինգերորդ դասարանցիների պատրաստած մեկ քառ. մետր տարածությամբ... ջերմոցը լավագույն գործերից մեկն էր ճանաչվել:

Ա. Մատրոսովի անունը կրող դրուժինան բարեկամության լայն կապեր ունի բոլոր հանրապետությունների աշակերտների հետ: Այդ բարեկամության միջոցով ստացված նյութերով նրանք մեծ ցուցափեղկ են ձևավորել:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

## ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԵՐԹՈՒՂԻ

*Սոցիալիստական երկրների հետ ճամբարային ջոկատներ փոխանակելը գեղեցիկ ավանդություն է դարձել: Պիոներական ակտիվ աշխատանքների համար հանրապետության մի խումբ դպրոցականներ անցած ամռանը հանգստացան Հարավսլավիայի Սուտոմորե քաղաքի մոտ գտնվող «Համերաշխության ու բարեկամության» ճամբարում: Հայաստանցի պիոներները ամբողջ հերթափոխի ընթացքում ուշադրության կենտրոնում էին գտնվում: Հարավսլավացի բարեկամները նրանց էքսկուրսիաների տարան սոցիալիստական Հարավսլավիայի պատմական ու տեսարժան վայրերը: Բելգրադ, Ցետյին, Բուդվար քաղաքներից հետո նրանց վրա մեծ տպավորություն գործեց 19-րդ դարի Չերնոգորիայի թագավորներից մեկի՝ Նիգուշի դամբարանը: Նիգուշը նաև գրել է ու մեծ համբավ վայելել երկրում: Մահանալիս կտակել է իրեն թաղել լեռներից մեկի կատարին: Նրա դամբարանը հասնելու համար պիտի հաղթահարել 410 աստիճան: Մարմարից ու բազալտից կառուցված այդ դամբարանը արվեստի ինքնատիպ գործ է: Բլրի գագաթից հեքիաթային մի տեսարան է բացվում, որը երիզվում է Ադրիատիկ ծովի կապույտ շղարշով և բլուրների ու լեռների կանաչ գորգով:*

*Բելգրադում հայ պատանիները այցելեցին սովետական մարտիկների շիրիմներին: Հայաստանից հող էին տարել, որը սփռեցին այնտեղ թաղված տասից ավելի հայ սպաների գերեզմանին:*

*Հերթափոխի ընթացքում նրանք բարեկամացան իրենց հասակակիցների հետ և այդ կապը շարունակում են պահպանել:*

*ՍՏԵՓԱՆ ԿՈՒՐՏԻԿՅԱՆ*

# ՍԿԻԶԲԸ



(«Պատմվածքներ Անդրանիկի մասին» շարքից)

Հազար ութ հարյուր վաթսունհինգ թվականին Շապին-Գարահիսար քաղաքում ծնվեց մի մանուկ, որին կոչեցին Անդրանիկ: Աճեց, հասակ առավ մանուկ Անդրանիկը, դարձավ քաղցրաժպիտ, թխաչ, թխահոն, թխահեր մի պատանի: Նա աշակերտեց իր՝ ծննդավայրի հայկական տարրական դպրոցում: Ավարտելուց հետո դարձավ իր հյուսն հոր աշակերտն ու օգնականը:

Ամռան մի օր Անդրանիկի հայրը՝ վարպետ Թորոսը ըմբոստանում է իրենից ձրի աշխատանք պահանջող թուրք ոստիկանի դեմ: Ոստիկանը հայհոյում, է վարպետին, նրա ազգն ու լեզուն, նրա սրբազան օջախը... Վարպետին տուն են բերում ծեծված, ջարդված, արյունլվա:

Պատանին հանգստացնում է հորը, նրա ցավերն ամոքելու, սփոփելու համար: Իսկ մտքում վճռում է վրեժխնդիր լինել:

Եվ չի ուշացնում՝ դատաստան է տեսնում ոճրագործի հետ, բայց ինքն էլ ձերբակալվում ու բանտ է նետվում: Նրան կախաղան էր սպառնում: Սակայն, ընդհատակում գործող հայ ազատության մարտիկները պատանուն փախցնում են բանտից ու հասցնում Պոլիս:

Այսպես սկսվում է նրա կյանքի փշոտ ու դժվարին ուղին: Պոլսում իր ժողովրդի կյանքին, պատվին ու ազատությանը նախանձախնդիր մարդկանց շրջանն ընկնելով, սկսում է գործել նրանց հետ:

Իննսունհերեք թվականին Պոլսից մեկնում է Կովկաս, այնտեղից հասնում Տարոն և մասնակցում սուլթանական արյունոտ բռնապետության դեմ ուղղված ազգային-ազատագրական կռիվներին:

Արդար աշխատանքի ու վաստակի համար աշխարհ եկած պարզ մարդը անհավասար կռիվներում դառնում է առասպելական անձնավորություն, Ստեփան Շահումյանի արտահայտությամբ՝ «ժողովրդական հերոս», հայոց վերածնության նոր Սասունցի Դավիթը:

Իննսունական թվականների սկզբին նա Տարոնից մեկնում է Ախլաթ, այնտեղից Սասունի լեռները, և հարցուփորձ անելով գտնում է ազատության մարտիկների գլուխ հանդիսացող Աղբյուր Սերոբին, որի հերոսության համբավը տարածվել էր, հենց միայն անունը սարսափ էր պատճառում թշնամիներին:

Անդրանիկը ներկայանում է Աղբյուր Սերոբին և խնդրում իր խմբի մեջ առնել իրեն:

Նա տիվ ու գիշեր երազել էր Աղբյուր Սերոբի քաջերի շարքում, նրանց արժանի զինակիցը լինել, կյանքն անմնացորդ նվիրել իր ժողովրդի ազատության գործին:

Այժմ թաքուն անհամբերությամբ սպասում էր խմբի առաջնորդի վճռին: Իսկ վճիռը, ուշանում էր:

Վերջապես նա խոսեց.

— Տղա՛ Անդրանիկ, քանի որ հեռավոր Պոլսից հայրենիքի զույսում ցավը քեզ բերել է այստեղ, կմնաս մեզ մոտ, բայց իմացի՛ր՝ գլխիդ տակի բարձը քարն է լինելու, վերմակդ՝ ձյունը, ընկերդ սովն ու սառնամանիքը: Կդիմանա՞ս, տղա՛:

— Գիտեմ... կդիմանամ ու կկռվեմ, փաշա՛:

Սերոբը թավ հոնքերի տակից խստաբարո նայում է Անդրանիկին, նրա հաստատուն դեմք-դիմագծին: Իսկապես ամուր տղա է երևում: Կդիմանա:

— Իսկ որտե՞ղ ես ծնվել:

Հարց-հարցի ետևից տալով, նա ծանոթանում է Անդրանիկի կենսագրությանը, իմանում, որ նա արդեն վրեժխնդիր է եղել հարազատ հոր համար, նրա իրավունքներն ու արժանապատվությունը ոտնահարող ոստիկանից, այդպիսով ստացել առաջին մարտական մկրտությունը:

— Կմնաս մեզ մոտ, բայց դեռ հրացան չես ունենա,— ասում է Սերոբը,— ուժեղ տղա ես երևում, կօգնես սար ու ձոր մթերք փոխադրելուն, կռվողներին հաց ու ջուր կհասցնես, վիրավորի վերքը կկապես:

— Սերո՛բ փաշա, ես ազատության զինվոր եմ. կանեմ այն, ինչ կհրամայես,— պատասխանում է Անդրանիկը:

Օրերից մի օր էլ, ցայգալույսին, սասունցի մի երիտասարդ սուրհանդակ է սուրում գյուղ, փրփրերախ նժույգից ոստնում ցած, շտապում Սերոբի մոտ, տագնապով հայտնում, որ Մուշից դուրս են եկել համիդիե

կոչվող հրոսակախմբեր և առաջ են շարժվում՝ գյուղը պաշարելու և իրենց թակարդելու համար:

Սերոբը սուրհանդակին լսելուն պես, իր քաջերին հրամայում է խուլյունեթ թողնել գյուղը և լեռնային կածանով բարձրանալ մերձակա ժայռակարկառները, այնտեղ ամուր պաշտպանություն ստեղծել՝ թշնամուն դիմագրավելու համար:

Մեջք ու կուրծք փամփուշտակալներով պատած, հրացաններն ուսերին, նրանք շտապ դուրս են գալիս գյուղական խրճիթներից, ուր ապաստանել էին այդ օրերին: Անդրանիկն էլ շալակում է մթերքով լի ծանր պարկը և հետևում խմբին: Նրանց հետ է լինում նաև Սերոբի կինը՝ Սոսեն, նույնպես ձեռքին հրացան, փամփուշտակալները խաչաձև կապած կրծքին:

Երբ նրանք արդեն ամրացել էին ժայռակոփ բարձունքում, համիդիե կորք-հրոսակախումբը տեղ է հասնում:

Լուսադեմին կատաղի կռիվ է բորբոքվում երկու տասնյակ քաջերի և մի քանի հարյուրի հասնող համիդիե հրոսակների միջև:

Բարձունքում, կարկառուտների մեջ ամրացած քաջերը դիպուկ կրակոցներով ետ են պահում արյունռուշտ հրոսակախմբերին:

Չնայած կրած ծանր կորուստներին, թշնամին համառորեն ձգտում է նրանց դիմադրությունն ընկճել՝ արժանանալու համար դրամական մեծ պարգևների ու համիդյան շքանշանների, որ խոստացել էր թուրք կառավարությունը:

Սերոբի գլուխը գնահատված էր օսմանյան հարյուր հնչուն ոսկի, Գևորգ Չավուշինը՝ հիսուն, մյուսներինը՝ տասական ոսկի:

Գնալով կռիվը թեժանում է: Համիդիե հրոսակները հույս ունեին, որ մինչև երեկո կսպառվի հայդուկների փամփուշտը, կրակելու այլևս ոչինչ չի մնա նրանց և մթնելուց առաջ իրենք ուզածի պես հաշվեհարդար կտեսնեն սուլթանի դեմ ապստամբած այս մի բուռ քաջերի հետ և կստանան հնչուն ոսկիները:

— Խնայե՛լ փամփուշտը, ո՛չ մի գնդակ զուր չարձակել,— մերթընդմերթ լսվում էր Սերոբի տիրական ձայնը:

Քարատակին, մթերքի պարկի մոտ նստած, Անդրանիկը փոթորկուն սրտով լսում է պարկ-պարկոցները, շնչում վառոդի հոտը և... ավա՜ղ, վանդակում արգելափակված առյուծի պես է. հրացան չունի, որ ինքն էլ կրակի:

Մեկ էլ հանկարծ պայծառանում է նրա դեմքը, մի միտք է ծագում գլխում, իսկույն անցնում է գործի: Կուրծքը դեմ է տալիս մոտակա մեծ քարաբեկորին, տեղահան անում այն ու բարձունքից գլորում թշնամու վրա: Թնդյուն-դղրդյունով գահավիժող ժայռաբեկորը այն տպավորությունն է թողնում թշնամու վրա, թե «գյավուրները» թնդանոթ էլ ունեն: Խուճապի են մատնվում, շատերը ահաբեկված լքում են դիրքերը, փախուստի դիմում: Հայ քաջերը կրակում են փախչողների վրա, շատերին գետնում:

Բայց ահա մոտակա ժայռակարկառից լսվում է մեկի ճիչը և այնտեղից կրակոցը դադարում է:

Անդրանիկը շտապով սողում է վիրավորի մոտ, պոկում նրա շապկի թևը, կապում վերքը, դադարեցնում արյունահոսությունը:

Քարատակերին ապավինելով, թշնամին գաղտագողի առաջ է սողում այն կողմից, ուր լռել էր կրակոցը: Սերոբը նկատում է, որ Ցից քարի ետևից այլևս չի կրակում իր սիրելի Կայծակը: Օղակման անմիջական վտանգը կանխելու համար, նա որոշում է կնոջը՝ Սոսեին մենակ թողնել ու գնալ Կայծակի դիրքը պաշտպանել աջ թևից, բայց մեկ էլ հանկարծ Ցից քարի կողմում վերսկսվում է կրակոցը...

Բարձունքի աջ կողմը խցկված հրոսակները, հուսահատ նահանջի են դիմում սողեսող:

— Սոսե՛, այս ի՞նչ է կատարվում, ո՞վ կարող է լինել Կայծակին փոխարինողը,— Սերոբը հարց է տալիս կնոջը:

— Երևի Գևորգ Չավուշը:

— Գևորգը չէր կարող թողնել իր դիրքը և ձախ թևի ճամփան բացել թշնամու առաջ:

— Գուցե Ապրո՞ն:

— Ապրոն, տե՛ս, Կարմրաքարի մոտ կռիվ է տալիս:

Մեծ կորուստներից հետո, վերահաս գիշերից խուսափելու համար, թշնամին թողնում է դիրքերն ու նահանջում մոտակա քրդական գյուղը. Սերոբը դուրս է գալիս իր դիրքից և շտապում է դեպի Ցից քար, տեսնելու, թե ո՞վ էր Կայծակին փոխարինող քաջը, որ հինգ գնդակով հինգ համիդեական ճամփեց այն աշխարհը:

Մոտենալով ժայռակարկառին, Սերոբը աչքերը և բերը չռած, կանգ է առնում: Ուրեմն նա է՝ նորեկ շալինգարահիսարցին:

— Անդրանի՛կ, տղա՛,— ասում է նա,— այսօր դու ապացուցեցիր, որ արժանի ես իմ քաջերի շարքում լինելու: Ապրե՛ս: Այսօրվանից Կայծակի հրացանը քոնն է: Այդ հրացանը նրա ձեռքին մեծ գործ է տեսել... Հիմա քե՛զ տեսնենք:

Անդրանիկի հուզմունքին չափ չկար: Հրացան ստացավ... Այդ օրվանից սկսվում էր մի նոր շրջան պատանու կյանքում, որի հետագա ճամփան անցնելու էր կրակների ու բոցերի միջով, դարձավ լեգենդ և երկար կյանքի երախտապարտ ժողովրդի հիշողության մեջ, հավերժացվելով սերնդեսերունդ:

Նկ. ՌՈՒԲԷՆ ԹՈՒՄԱՍՅԱՆԻ



նը բնանկարը աշխույժ ու գրավիչ է դարձնում: Ցորենի ընդարձակ արտերը երբեմն հատվում են գրանիտե բնական ցանկապատերով, և ժամանակ առ ժամանակ ֆիննական գողտրիկ տները հիշեցնում են, որ մոտակայքում, ինչ-որ տեղ, մարդիկ կան: Կանգ առանք Հիդեն-Վեսիտո լճի ափին: Վճիտ և կույալ բառերը ասես հատուկ այս լճի համար էին ստեղծված: Այնպե՛ս կա-

# ՖԻՆԼԱՆԴԻԱ, ԼՃԵՐԻ ԵՐԿԻՐ

*ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ*

## 5. ՀԻԼԿԱ, ԼԻԶԱ, ՀԵԼԿԱ...

Մանկական այդ երգչախմբի հետ ծանոթությունն ընդմիշտ կմնա իմ հիշողության մեջ: Աշխույժ, ուրախ, ժպտերես պատանիներ ու աղջիկներ էին. շիկահեր և կապուտաչ: Իսկ անուննե՛րը...

— Հիլկա, Լիզա, Հելկա, Միմոլա, Մատտա, Մարյո...

Մարյոն հատկապես. կրակի կտոր. երգում էր այնքա՛ն եռանդով, այնքա՛ն զգացմունքով: Նամանավանդ այն երգը, որի կրրկներգի ժամանակ հարկավոր էր ոտքը խփել գետնին և ձեռքերը բարձրացնելով՝ գլխավերև, երեք անգամ ծափահարել:

Ֆինն պիոներներ էին, որոնք սովետաֆիննական բարեկամության նվիրված այդ երեկոն խրախական տոնահանդեսի վերածեցին:

«Raketti». այսպես է կոչվում նրանց ամսագիրը, որը նախատեսված է նույն հասակի համար, ինչ «Պիոները» մեզ համար: Մարյոն հյուրերին մեկական «Ռակեթթի» նվիրեց և իբրև հիշատակ իր վզկապը նվիրեց ինձ:

— Երգել շա՞տ ես սիրում,— հարցրեցինք Մարյոյին:

— Օ՜, այո՜,— ասաց նա:

— Ուրիշ էլ ի՞նչ:

Նա մի պահ մտածեց և ապա ուսերը վեր քաշեց.

— Այնքան շատ բան կա, ո՞րը ասեմ:

Նորություններն հաջորդում էին միմյանց կինոժապավենի արագությամբ: Երբեմն նույն օրվա առավոտյան տեսած մի հուշարձան կամ թանգարան, մի գործարան կամ նույնիսկ ոչ մեծ մի քաղաք, կարող է երեկոյան աղոտանալ և նույնիսկ մոռացվել: Սակայն տուրիստը երկու հավատարիմ օգնական ունի, երկու անփոխարինելի հուշարար, որոնք ոչ միայն ճամփորդության ավարտից անմիջապես հետո, այլև շատ ամիսներ, տարիներ անց կթարմացնեն տրպավորությունները և կվերականգնեն մանրամասները:

Ծոցատետր և լուսանկարչական ապարատ՝ խոսքը սրանց մասին է: Եվ հիմա, կրկին դիմելով այս երկուսին, կարող եմ մի քանի տեղեկություն ես հաղորդել Ֆինլանդիայում տուրիստական մեր խմբի վերջին օրվա մասին:

Ավտոճանապարհ՝ Հելսինկի—Տուրկու:

Անտառը կարծես երկու գույնով ներկած լինեն: Եղևնիների մուգ ֆոնին կեչիների բաց կանաչ գույնն էր ու թափանցիկ:

— Այս լճում մանրէ չկա,— ասաց գիդը,— և սա այդ առումով միակն է ամբողջ Ֆինլանդիայում: Ցելյուլոզայի արդյունաբերությունն իր թափոններով հազարավոր լճեր է աղտոտել, իսկ այս մեկը բախտի բերմամբ...

Անտառ այստեղ՝ ինչքան ասես. հասկանալի է, որ թղթի և ցելյուլոզայի արդյունաբերությունը չափազանց զարգացած է: Եվ ահա հետևանքները՝ քաղաքակրթությունը միայն այդ լճի հետ չի չափել իր ուժերը, և իբրև բացառիկ երևույթ, լիճը ցուցադրվում է տուրիստներին: Տեսնողները Հիդեն-Վեսիտո լիճն ընկալում են իբրև բնության մի եզակի հրաշալիք:

Լիճը ճանապարհի ձախ կողմում է, աջում Լահնա Յարվիյան՝ բրած ձկան լիճը: Առաջին հայացքից թվում է, թե իրար շատ նման են: Բայց ոչ. մեկը բացարձակ մաքուր է, իսկ մյուսը, թեև ոչ այնքան մաքուր, բայց չափազանց հարուստ՝ ձկնով: Տուրիստը, սակայն, շատ ժամանակ չունի այս գեղեցիկ լճերով կմայլվելու: Նպատակակետը Տուրկուն է, Ֆինլանդիայի հին մայրաքաղաքը: Եվ, իհարկե, Տուրկուի ամրոցը, որը կառուցվել է 1229 թվականին: Այստեղ մենք իմացանք բնության տարօրինակություններից մեկի

---

*Սկիզբը՝ «Պիոներ» №№ 4—7*

մասին, այն կղզին, որի վրա կառուցվել է ամրոցը, հարյուր տարին մեկ 60 սմ ջրից բարձրանում է: Դրա հետևանքով կղզին թերակղզի է դարձել: Ամրոցի կողքին հաստաբեստ պատերով (8 մ) պահապան-աշտարակն է: Հակաառցաբեկորները վարկվելով անպակուռ աշտարակին, փշուր փշուր են լինում, և ուժաթափ բեկորներն այլևս չեն վնասում հնադարյան ամրոցի հիմքերին: Դեռևս 1220 թվականին տեղացիներին ծանոթ է եղել կենտրոնական ջեռուցումը, և այս ամրոցը, դղյակը և թագավորական եկեղեցին տաքացրել են շոգու միջոցով:

Մի անակնկալ ևս. Ֆինլանդիայում և Շվեդիայում հնադարյան շինարարության մեջ նույնպես ընդունված է եղել շաղախին ձվի դեղնուց խառնել: 7-րդ դարից կանգուն հայկական ճարտարապետության նշանավոր հուշարձանների շաղախի բաղադրության մեջ գործածվել է ձվի դեղնուցը: Պարզվում է, որ այստեղ, 13-րդ դարի այս խոշոր հուշարձանը կառուցելիս, նույնպես շինարարները դիմել են այդ փորձված միջոցին:

Առաջին հարկի ընդարձակ սրահներում մեկ դիմավորում են կապույտ շրջազգեստներով կանայք ու աղջիկներ: «Աղախիններն» են, որոնք կրում են ճիշտ նույնպիսի տարազներ, ինչ իրենց նախատատերը՝ յոթ դար առաջ: Բարձրանում ենք երկրորդ հարկ: Շքեղ դահլիճում կարմրազգեստ կանայք են՝ «ավնվապարմ տիկնայք», հնադարյան արդուկարդով:

Այս ամրոցում ասպետները մեծ խրախճանքներ են արել. փայտե ծանր սեղանը դրա վկան է. խոռոված մսի հսկայական կտորներն այս սեղանի վրա են բաժան-բաժան եղել, և դանակի հարվածները խոր հետքեր են թողել, տախտակի վրա:

Ուրիշ ի՞նչ տեսանք այդ օրը Տուրկուում: Դիտեցինք քաղաքը, փողոցներն հատելիս անցանք «Վապոոի» նշանավոր արձանի կողքով: Եղանք կենտրոնական հրապարակում, որ մինչև կեսօր բացօթյա շուկայի էր վերածված,



Աղետների դասակարգություն կա՝ «Բնության ահեղ երևույթներ»: Այսպես են անվանվում ավերապատճառ վեհ, հեղեղ, տայֆունային երևույթները, ինչպես օրինակ՝ երկրաշարժերը, մրրիկ-պտտահողմերը, փոթորիկները: Բայց այ, օրինակ, կարո՞ղ է արդյոք բնության ահեղ երևույթ համարել վաղ ցրտահարությունը, համատարած ձնհալը: Կամ խորշակը: Կամ էլ թրթուրները: Ի՞նչ ընդհանուր բան կարող են ունենալ նրանք երկրաշարժի, թայֆունի կամ էլ պայթյունի հետ: Մի՞թե կենդանի բնությունը կարող է «պայթել»:

# ՀԱՎԱՍԱՐԱԿՇՌՈՒԹՅՈՒՆ ԿԱՄ ՊԱՅԹՅՈՒՆ

Վ. ՏԱՆԱՍԻՅՉՈՒԿ

## ՄԻՋԱՏՆԵՐ՝ ՀԱԶԱՐԱՎՈՐ ՏՈՆՆԱՆԵՐՈՎ

Այս երևույթը տեղի է ունենում միայն ամռանը ինչ-որ տեղ Եթովպիայում կամ էլ Իրաքում: Անձրևներից հետո, սովորաբար չոր և կարմրաշեկ լեռների փեշերը բուռն կերպով կանաչում են: Որտեղից որտեղ հայտնվում են փոքրիկ՝ ընդամենը մի քանի միլիմետր երկարություն ունեցող, մորեխամիջատների հսկայական բանակներ: Սկզբում նրանք խոտի մեջ աննկատ են, բայց շատ արագ են աճում: Երկու շաբաթ անց նրանք արդեն վխտում են կանաչի մեջ: Իսկ հետո կանաչն անհետանում է՝ միջատներն այն արդեն լրիվ կերել են: Իսկ միջատների առվակները ցած են հոսում՝ դեպի գետերը, գյուղերը, այգիներն ու դաշտերը: Եվ ծաղկուն հովիտները մի քանի օրվա ընթացքում գորշանում են, կարծես ձմեռ լինի: Այդ ժամանակ արդեն մորեխն օդ է բարձրանում:

Միլիոնավոր և միլիարդավոր միջատներ հսկայական ամպերի պես շարժվում են օդում: Եթե ամպն իջնում է այգիների վրա, ճյուղերը ճարճատում են միջատների ծանրությունից և ամենուրեք միապաղաղ խռթխռթոց է լսվում. միջատների ծնոտներն են գործում: Մի քանի ժամվա, երբեմն նույնիսկ մի քանի րոպեի ընթացքում ամբողջ շրջաններ ամայանում են: Մարդկանց սով է սպառնում:

Միջատների քանակի այս անսպասելի և հզոր պոռթկումը մի՞թե նման չէ պայթյունի:

Բայց արդյո՞ք անսպասելի է: Եթե ուշադիր լինենք, կտեսնենք, որ դրան նախորդել է բավականին տաք ձմեռ, և մորեխի ձվիկ-

*որտեղ վաճառում էին աքանչելի ծաղիկներ, արևադարձային մրգեր և ձկնեղեն: Նեսօրից հետո դարձյալ անցանք այդ հրապարակով. այնպես էր ավլած-մաքրած, որ շուկայի հետքն անգամ չկար: Հանդիսավոր մի հրապարակ էր դա, որի չորս կողմը պարդարված էր ճարտարապետական նշանավոր հուշարձաններով: Թատրոնի շենքը, եկեղեցին, քաղաքապետարանը և մեծ համալսարանը:*

*...Տուրկուում ապրել է մի կին, որը պավակ չի ունեցել, սակայն երեխա շատ-շատ է սիրել: Մահից առաջ նա կտակել է, որ իր ունեցվածքով աղջիկների դպրոց հիմնեն և դայակներ պատրաստեն: Եվ ահա երախտապարտ քաղաքացիները այդ նույն դպրոցին մոտիկ բարձունքի վրա կառուցել են նրա հուշարձանը՝ կանգնած է գորովագութ մի կին, մանկանը գրկած, ոտքերի մոտ քարե նստարան, որի վրա հաճախ են հանգստանում աղջիկները՝ ապագա դայակները: Եվ քանի որ հուշարձանի մոտից բացվում է քաղաքի համայնապատկերը, ուստի բարի կնոջը այցելության են գալիս նաև Ֆինլանդիայի մյուս քաղաքներից շատ դպրոցականներ, ծնողներ, աշխարհի տարբեր ծայրերից տուրիստներ... Այսպիսով՝ բարեպարդ տիկնոջ արձանը մշտապես շրջապատված է մանուկներով ու մեծերով:*

ները չեն բորբոսնել: Ուրիշ միջատներ դրանք չեն կերել, իսկ ձվերից դուրս եկած թրթուրների համար բավականաչափ կեր է եղել: Այստեղից էլ՝ պայթյունը: Բայց այն վայրերում, որտեղ միջատաբանները մշտապես հետևում են մորեխի քանակին և չեն թողնում, որ բազմանա, այդ աղետըն արդեն անցյալի գիրկն է ընկել:

Սակայն կենդանի էակների հարձակումները միայն հարավում չէ, որ լինում են:

## ԼԵՄԻՆԳՆԵՐԸ ԼՈՂՈՒՄ ԵՆ ԴԵՊԻ ՕՎԿԻԱՆՈՍ

Պատկերացրեք Հյուսիսային Նորվեգիայի դաժան բնությունը, տունդրան և խոր ծովածոցերով՝ ֆիորդներով կտրտված լեռները: Եվ այդ տունդրայով կարմրագորշ գորգի պես հոսում են ոչ մեծ կրծողների՝ լեմինգների անհաշիվ բանակներ: Սովորաբար թաքնվող և երկչոտ, իրենց բներից միայն երեկոները դուրս եկող այս կենդանիներն անճանաչելի են դարձել. ոչնչից և ոչ ոքից չեն վախենում: Քաջաբար հարձակվում են թե՛ մարդկանց, թե՛ կենդանիների վրա: Եվ կարծես ամենևին ուշադրություն չեն դարձնում իրենց հետևող բազմաթիվ գիշատիչ թռչուններին, գայլերին, բևեռաղվեսներին: Լեմինգները շարժվում են դեպի արևմուտք, միայն արևմուտք: Գնում են գիշեր-ցերեկ: Լողալով անցնում են գետերն ու լճերը: Իսկ երբ հասնում են ծովին, լողում են ծովով: Հայտնի է մի դեպք, երբ կես ժամ շարունակ շոգենավը ֆիորդով շարժվել է լեմինգների հսկայական վտառի միջով:

Վերջիվերջո նրանք համարյա բոլորն էլ ոչնչանում են, իսկ մնացածները կրկին դառնում են երկչոտ ու հանգիստ կենդանիներ:

Ինչո՞ւմն է բանը: Պարզապես նախորդ տարին կերը շատ է եղել, իսկ գիշատիչները՝ քիչ: Այնպես որ «քանակի պայթյունի» մասսայական երևույթի պատճառը թե՛ մորեխների և թե՛ լեմինգների դեպքում նույնն է:

Կենդանաբանության դպրոցական դասագրքում այսպիսի մի օրինակ կա. մարգագետնային թիթեռի սերունդը ամառվա ընթացքում 9 տոննա բուսականություն է խժռում: Սենյակի սովորական ճանճը իր կարճ կյանքի ընթացքում 2000 ձու է դնում: Եվ տարին մոտ 8 սերունդ է ունենում: Եթե այդ բոլոր սերունդները ապրեին, տարվա վերջում ճանճերն այնքան կբազմանային, որը կարելի կլիներ արտահայտել երկուսով և 24 զրոյով: Եվ այդ ճանճերը միլիոններ անգամ ավելի կկշռեին, քան ամբողջ մարդկությունը:

Այս թվերը զարմանալի են և մի փոքր էլ՝ ծիծաղելի: Նույնիսկ լաբորատորիայում փորձնական ձևով հնարավոր չէ այնպիսի պայմաններ ստեղծել, որպեսզի ճանճերի բոլոր թրթուրները ապրեն: Էլ ուր մնաց բնության մեջ, որտեղ յուրաքանչյուր կենդանի էակ բազմաթիվ թշնամիներ ունի, որտեղ նրա համար կործանարար են թե՛ ջերմաստիճանի փոփոխությունները, թե՛ անձրևը, թե՛ երաշտը և թե՛ հիվանդությունները: Կենսաբանները գտնում են, որ այս երևույթները յուրօրինակ «մամլիչ» են, որոնք «ճնշում» են յուրաքանչյուր կենդանու կամ բույսի այս կամ այն տեսակի վրա և սահմանափակում նրանց աճը: Իսկ երբ բարենպաստ պայմաններ են առաջանում, այդ «մամլիչը» թուլանում է և տեղի է ունենում այսպես կոչված էկոլոգիական պայթյուն:

Վայրի բնության մեջ, առանց մարդու միջամտության, այդ պայթյուններն իրենք իրենց հանգչում են: Ենթադրենք «մկնային» տարի է: Մուկ ուտող գազանները խնջույք են անում: Այդ տարի նրանք ավելի շատ ձագեր են ունենում, նրանցից ոչ մեկը սովից չի ոչնչանում: Ամռան վերջին, կամ էլ հաջորդ գարնանը մկներն արդեն քչանում են: Այսպիսով բնությունն ինքն է հավասարակշռում իր կշեռքը:

Սակայն լինում են պայթյուններ, որոնց հետևանքներն իրենց զգացնել են տալիս մի քանի տարի, նույնիսկ մի քանի հարյուրամյակ: Եվ շատ հաճախ այդպիսի պայթյուններ մարդն ինքն է անգիտորեն առաջացնում:

*(Շարունակելի)*





# ԲՆՈՒԹՅԱՆ ՏԱՐՐԵՐԻ ՓՈԽԱԴԱՐՁ ԿԱՊՆ ՈՒ ՊԱՅՄԱՆԱՎՈՐՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ

## 3. ԱԾԽԱԾՆԻ ԵՎ ԹԹՎԱԾՆԻ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ ԲՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Ածխածինն ու թթվածինը կենսոլորտի ամենակարևոր տարրերն են: Դրանցով է պայմանավորված կյանքի գոյությունը մեր մոլորակի վրա:

Թթվածինն անհրաժեշտ է բոլոր կենդանի էակների, այդ թվում նաև բույսերի, ամենակարևոր ֆունկցիայի՝ շնչառության համար: Ածխածինը մտնում է բոլոր օրգանական նյութերի բաղադրության մեջ: Կյանքի աղբյուր հանդիսացող ֆոտոսինթեզի պրոցեսում այդ երկու տարրերն էլ խիստ կարևոր դեր են խաղում: Երկրի վրա աճող բոլոր բույսերը միասին վերցրած՝ տարեկան սինթեզում են 375 միլիարդ տոննա օրգանական նյութեր (չոր նյութի հաշվով), որոնք մեր մոլորակի բնակիչների՝ մարդկանց, կենդանիների և մանրէների սննդի միակ աղբյուրն են հանդիսանում: Ֆոտոսինթեզի ընթացքում մթնոլորտից յուրացվում է մոտ 650 միլիարդ տոննա ածխաթթու գազ, հողից՝ 5 միլիարդ տոննա ազոտ, շուրջ 1 միլիարդ տոննա ֆոսֆոր և 10—15 միլիարդ տոննա այլ հանքային տարրեր: Այդ բոլորի փոխարեն մթնոլորտը հարստացվում է 350 միլիարդ տոննա ազատ թթվածնով:

Միլիարդավոր տարիներ շարունակ այս պրոցեսը տեղի է ունեցել բնականոն ձևով, ապահովելով կյանքի զարգացումը, կատարելագործումը:

Սակայն ներկայումս, մարդու գործունեության հետևանքով բնության մեջ նկատելիորեն խախտվել է ածխածնի բնականոն շրջանառությունը:

Եթե բնության մեջ ածխածնի երկօքսիդը ստացվում է բույսերի, մանրէների, մարդու, կենդանիների շնչառության, ինչպես նաև փտման, օքսիդացման պրոցեսներում, ապա արդյունաբերության և տրանսպորտի զարգացման հետևանքով ածխածնի երկօքսիդի առաջացումը և կենսոլորտ թափանցելը ներկայումս 100—150 անգամ գերազանցում է բնական ճանապարհով ստացվող քանակությունը: Վերջին 100 տարում ածխաթթու գազի կոնցենտրացիան մթնոլորտում ավելացել է 10—15 տոկոսով: Դա արդյունք է այն բանի, որ երկրագնդի արդյունաբերական ձեռնարկությունները և տրանսպորտը օդ են արտամղում տարեկան 15 միլիարդ տոննա ածխածին: Անցած

Սկիզբը՝ № 6, 7:

ԱԾԽԱԾՆԻ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅԱՆ ՄՈԴԵԼԸ ԲՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ (ըստ Նիչիպորովիչի, Դյուվինյեի և Բարթեզաթի)




I — Ածխածնի կշիռը ($CO_2$-ի ձևով) մթնոլորտում և օվկիանոսում:

II — $CO_2$-ի այն քանակությունը, որը մթնոլորտ է անցնում օքսիդացման հետևանքով:.

III — Օքսիդացված օրգանական նյութերի քանակությունը (շնչառություն, այրում և այլն):

IV — Ցամաքային օրգանիզմների կենսազանգվածը. Ա—բույսեր, Բ—կենդանիներ, Գ—մարդ, Դ—սնկեր և բակտերիաներ:

V — Այդ օրգանիզմների կողմից սննդի համար օգտագործվող նյութերի (չոր) կշիռը:

VI — Ածխածնի պաշարները լիտոսֆերայում:

ամբողջ հարյուրամյակի ընթացքում օդ է բաց թողնըված 400 միլիարդ տոննա ածխածին:

Միաժամանակ անտառային տարածությունների կրճատման, գյուղատնտեսական արտադրության նըպատակով տափաստանների, պրերիաների, պամպաների, մարգագետինների, սավաննաների տարածությունների կրճատման հետևանքով ածխածնի քանակությունը մթնոլորտում զգալիորեն ավելացել է, իսկ թթվածինը՝ պակասել: Պարզվում է նաև, որ մթնոլորտում ածխածնի քանակության ավելացումը պայմանավորված է ոչ միայն նավթի, քարածխի, տորֆի, փայտի, թերթաքարերի այրումով, այլ նաև մետաղաձուլական և քիմիական արդյունաբերության բուռն զարգացմամբ: Որոշ հետազոտողներ այն միտքն են հայտնում, որ այս բոլորի հետևանքով մթնոլորտում ածխածնի քանակությունը վերջին մի քանի տասնամյակներում ավելացել է մոտ 50 տոկոսով:

Արդյունաբերական ձեռնարկությունների կողմից օդ արտամղված ծծմբի, ազոտի, քլորի, ֆտորի միացությունների օքսիդացման հետևանքով, առաջանում են զանազան նոսրացած լուծույթներ, որոնց չափերը անցնում են միլիարդ տոննայից: Մթնոլորտային տեղումների հետ դրանք թափվում են կարբոնատային հողերի և կրաքարային ժայռերի վրա, որի հետևանքով քայքայվում են ածխաթթվական կալցիումը և մագնեզիումը՝ օդ արտամղելով մեծ քանակությամբ ածխածնի երկօքսիդ:

Ածխածնի շրջանառության գործում չափազանց ակտիվ դեր է խաղում նաև համաշխարհային օվկիանոսը: Դա կազմում է ածխածնի ամբողջ համաշխարհային պաշարի ավելի քան 98 տոկոսը: Ջրային անհուն տարածություններում աճող հսկայական քանակությամբ բույսերը, որոնք տաս անգամ գերազանցում են ցամաքի բուսականությանը, ֆոտոսինթեզի շնորհիվ նույնպես հսկայական քանակությամբ ածխաթթու գազ են կլանում և թթվածին արտամղում մթնոլորտ (տես՝ ածխածնի շրջանառության մոդելը):

Մարդու գործունեության հետևանքով ածխածնի համաշխարհային պաշարների մի զգալի մասը որոշ ժամանակով՝ տասնյակ տարիներով, հարյուրամյակներով, իսկ երբեմն նաև հազարամյակներով դուրս է մնում նյութերի ընդհանուր շրջանառությունից: Դրանք անթիվ-անհամար փայտյա տներն են, շինությունները, կահույքը, շինափայտի և վառելափայտի պաշարները, գործվածքները, պլաստմասսայի իրերը, թուղթը, գրքերը, մթերքները, պայթուցիկ նյութերը, երեք միլիարդ ընտանի կենդանիների զանգվածները, չորս միլիարդ մարդիկ, զանազան թափոնները, աղբանոցները և այլն: Հավանաբար, հենց նման կուտակումներն էլ կոմպենսացնում են ածխաթթվի ավելացումը մթնոլորտում:

*(Շարունակելի)*

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Կենսաբանության դոկտոր-պրոֆեսոր

Լույս է տեսնում 1923 թվականից




8. 1978 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջը՝ ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ



«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—88, 56—14—96:

ՎՖ 01791: Պատվեր 1280: Տպաքանակ 53700: Ծավ. 3 մամ.:
Ստորագրված է տպագրության 20 VII 1978 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Միքայելյանի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 15 Կ.
ԻՆԴԵՔՍ 77806



# ԲՆԿՈՏԸ

ԳԱՐԻԿ ԲԱՆԴՈՒՐՅԱՆ

Ուշ գիշերվա խավարում
Վրանը չի խաղաղվում,
Տղաները քուն չունեն.
Պիտի մթնով արթնանան,
Քաջալ սարը բարձրանան,
Արևածագը դիտեն:

Կարոն կրկին ու կրկին
Հիշեցնում է ամենքին՝
Հպարտ կանգնած խմբի դեմ.
— Ձեզ եմ ասում, հե՜յ, տղե՛րք,
Թե որ քնով դուք ընկնեք,
Ձեզ քնած էլ կթողնեմ:
— Վա՜յ, Կարո՛ ջան, խղճա՛ մեզ,
Թե այդպիսի բան անես,
Մենք կորած ենք խմբովին,—
Իրար աչքով են անում...
Իսկ քիչ հետո վրանում
Քունն է իշխում բոլորին:

Եկան ժամերն ու անցան...
Ու երբ Կարոն արթնացավ,
Տեսավ՝ ներսում ինքն է լոկ:
Գլուխն հանեց վրանից.
— Գնացե՜լ են առանց ինձ,
Ու կեսօր է արդեն շոգ:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ